1916 № 38.—Սեպտեմբերի 18

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաարադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԼԱՐԵՆՔ ՄԵՐ ՈՅԺԵՐԸ

Երկու տարի շարունակ հայ ժողովուրդը արեան բողնքի մէջ լողացաւ։ Նախկին չէն, հարուստ, կեանքով ու հրճիւանքով լիք մեր հայրենի գեղածիծաղ աշխարհն դարձաւ ամայի մի գերեզմանատուն, ուր տակաւին կենդանի և կիսաշունչ մեռելներն անքում են խոր և այրող աղնւքցներով։

Տնքում են մեր մեռելներն, մեր անթաղ, անշիրիմ մեռելները, որոնց կիսաբաց աչքերում վրէժխնդրութեան բոցն է հրկիզւում, հայրենատենչ անմահ ոգին է ցոլցլում և մի սարերային, այրող կրակով վառում մեր հոգիները։

Վառում բոլոր այն տարագիրների և հալածական եղբայրների հոգիները, որոնք այսօր բնաւեր թռչունների նման ցրուել ու ծուարել են օտար հորիզոնների տակ։

Ու այսօր երբ արեան ծովը յորդել և վերջացել է, երբ կատաղի թշնամին կատարել ու պրծել է իր անսերը կատաղի թշնամին... 

Ու այսօր երբ արեան ծովը յորդել և վերջացել է, երբ կատաղի թշնամին կատարել ու պրծել է իր անասելի գործն, երբ մրրիկը անցել է... — nope

Երեկուայ մեր ամենախում թշնամին այսօր արձակ — համարձակ թափառում է երկրի լեռներում ու ձորերում, հնձում հայու քրտինքով ու աշխատանքով սերմանուած արտերը, թալանում ու կողոպտում հայրենիք վերադարձող ու վերաշինութեան կայծեր վառող խաղաղ բնակիչներին ու հովանաւորութիւն գտնում իշխանութեան կողմից....։

Անձկալի ազատութեան դռները ծեծող մեր յոշոտուած ու լլկուած քոյրերն ու եղբայրները գերութեան անարգ ճիրաններում կը հեծեծեն, մեր սեփական հողերն ու օջախները ուրիշների կընծայուին իբրև «փէշքէշ» և մեզ կը յայտարարեն հողազուրկներ ու օտարներ....։

Եւ այս բոլորը կատարւում են այն ժամանակ, երբ մեր երկրի մեծագոյն մասը ռուս ու հայ եղբայրների արեան գնով ազատուած է թիւրքական բանակներից։

Բայց մեր ցեղի մէջքը պատառող ու յոշոտող բոլոր այդ արարքները անզօր են մարեցնելու ու խաւարելու հայ ժողովուրդի լուսաւոր Արեգակը, նրա անմեռ յոյսը, որովհետև դարերի խոր և անքակտելի յիշատակներով, զօրաւոր ու աննկուն բնազդներով ամրապնդուած է հայ ժողովուրդի հոգին...։

Ու այդ ոգին երբէք չը պիտի լքի մեր երկրի ամպամերձ լեռներն ու գեղածիծաղ դաշտերը, լոյսի ու արևի բոյն մեր օջախները, մաքի ու գրչի հանդրուան մեր նուիրական վանքերն ու մեհեանները...։

*Պիտի գայ մի գեղեցիկ ու բաղձալի օր, երբ մենք պիտի վեր կենանք, հսկայական ու անծայրածիր կարաւան կազմած պիտի յորդենք մեր աշխարհը և աւերակների ու փլատակների վրայ հիմնենք քաղաքակրթութեան մի սրբազան տաճար։*

*Իսկ մինչև այդ գեղեցիկ օրը, հարկաւոր է վերականգնել մեր տարագիր եղբայրների ֆիզիքական ու բարոյական ոյժերը։*

*Վերականգնե՜լ... ահա այն հրամայական ու անհրաժեշտ պահանջն, որ պէտք է խորապէս զգան և համերաշխօրէն, ուս-ուսի տուած իրագործեն մեր բոլոր ընկերութիւններն ու գործիչները։*

*Ֆիզիքական ոյժերի վերականգնում ու պահպանում միայն բաւական չէ, հարկաւոր է նաև ոյժ տալ տարագիր եղբայրների բարոյական վերածնութեան։*

*Առաջ քաշել փախստական ժողովրդի առաջաւոր մտաւորականութիւն, դիւրութիւն և հնարաւորութիւն տալ նրան գործելու հասարակական և գաղթականական գործերին վերաբերող ասպարէզներում։*

*Չէ որ հէնց Հայաստանի ապագայ վերակազմութեան գործում արևմտահայերը ունենալու են աւելի գործօն մասնակցութիւն և երկրի կուլտուրական ու տնտեսական աշխատանք ծանրանալու է նրանց ուսերին։*

*Ուրեմն հարկաւոր է հիմակուանից մարզել ու առաջ քաշել երկրի երիտասարդութեան պատրաստի ուժերը։ Տարածել ու հիմնաւորել այն մտայնութիւնը թէ՝ Հայաստանի ժողովուրդը մի «ամբոխ» չէ, այլ մի կազմակերպուած, վարչական ձեռներէցութեամբ բարձրօրէն վարձադրուած մի համայնք, մտքի ու լոյսի թեւաւորումներով հարուստ մի ժողովուրդ...։*

*Եւ այդ ժողովուրդը ընդունակ է կրկին շնչաւորել և քաղաքակրթութեան ջահեր վառել իր հայրենի երկրում։*

*Լարենք ուրեմն մեր բոլոր ոյժերը։*

*Թորգոմ*

---

# Համաշխարհային պատերազմը

---

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Կովկասեան ճակատում այս շաբաթ սկսուեց ռուսների առաջխաղացութիւնը Ծովամերձ շրջանում։ Էլլէուից հարաւ կոտրելով թիւրքերի դիմադրութիւնը նրանք գրաւել են թշնամու դիրքերը։ Կռիւը դեռ շարունակւում է այստեղ։*

*Մնացած գծերից կռիւներ են եղել միայն Գիւմիւշխանէի շրջանում։ Այս աւանի հարաւ-արևմտեան կողմը ռուսները մի երկու տեղ պատռել են թիւրքական ճակատը և մեծ քանակութեամբ պատերազմական աւարներ վերցնելով վերադարձել իրենց տեղերը։*

*Պարսկական ճակատում աչքի ընկնող գործողութիւններ են եղել միայն Համադանի ուղղութեամբ, ուր ռուսները նորից քիչ առաջ են անցել և առաջապահ խմբերի ընդհարումներից յետոյ գրաւել թշնամու պարենակիր անասունները և բաւական քանակութեամբ աւար։*

*Միջագետքի և Եգիպտոսի ճակատներից այս շաբաթ միայն սաւառնակային հետախուզութեան և մի երկու վայրի ռմբակոծութեան լուրերն են հասել մեզ։*

## ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Ռուսական ճակատում այս շաբաթ միայն Սերետի ակունքների վրայ են աչքի ընկնող գործողութիւններ տեղի ունեցել, որի ժամանակ ռուսները գերել են թշնամուց մօտ 1500 մարդ, մնացած գծերում ընդհանրապէս թնդանօթամարտ տեղի ունէր։ Մի երկու տեղ ինչպէս օրինակ Նարոչ լճից հարաւ արևմուտք և Կուլգիչևի լճի մօտ թշնամին յարձակումների փորձեր կատարեց, որոնք անյաջող անցան։ Նարոչի յարձակումներից առաջ թշնամին գազի ահագին քուլաներ էր արձակում դէպի ռուսական դիրքերը, սակայն այդ ևս նրանց չօգնեց։ Ռիգայի շրջանում ուժեղ հետախոյզ խմբերով երկու կողմերն էլ ուսումնասիրում են իրար դիրքերը։ Այդ խմբերից երկուսը խիստ արիւնահեղ բաղխումն են ունեցել Ռիգայից հարաւ։*

*Վերջին օրերս ռուսական դիրքերի վրայ սկսել են երևալ «Իշխան Մուրոմեց» ների մեծութեամբ սաւառնակներ, որոնք գործում են չորս մեքենայի օգնութեամբ։ Այդ հսկայական հարպիներից մէկը ռուսական մի կայարանի վրայ 17 հատ ռումբ է նետել, ամեն մէկը 2 փութ ծանրութեամբ։ Ռուսներին յաջողուել է թնդանօթային կրակով այս սաւառնակներից մի երկուսը փչացնել։*

*Ֆրանսական ճակատում շաբաթն սկսուեց գերմանական յարձակումներով Սոմից հիւսիս Կոբլ գիւղի շրջանում, իսկ վերջացաւ նրանով, որ ֆրանսացիք ուժգին գրոհով գրաւեցին այդ վերին աստիճանի ամրացրած գիւղը։ Կռիւներն այս շրջանում խիստ կատաղի բնոյթ են առել։ Ֆրանսացիների գերած մարդկանց թիւը դեռ ստուգուած չէ, սակայն արդէն 2000-ից անցնում է։*

*Վերդենի շրջանում գերմանացիք վերջնականապէս պաշտպանողական գծերի մէջ են մտել, թէև չեն դադարում յարձակումների փորձերով ցոյց տալ, թէ դեռ կռուի նախաձեռնութիւնը պահում են իրենց ձեռքը։ Այս շաբաթուայ կռիւներում ֆրանսացիք նորից քիչ առաջ են անցել Վօ-Շապիտր գծում՝ գերելով մօտ 100 հոգի։*

*Անգլիական ճակատում այս շաբաթուայ գլխաւոր կռիւները ևս կենդրոնացած էին Կոբլի շրջանում։ Ֆրանսացիների հետ միասին գրաւելով այդ գիւղը՝ նրանք գերել են մօտ 15000 մարդ և տիրացել ահագին քանակութեամբ, կենսամթերքի և ռազմամթերքի, որ թշնամին կուտակել էր այդ ամրութեան պահեստներում։*

*Անգլօ-Ֆրանսական ճակատներում սաւառնակային գործողութիւնները այս շաբաթ ևս մեծ չափերով էին կատարւում։ Սրանց մէջ առաջին տեղ է գրաւում ֆրանսական երկու սաւառնակի յանդուգն փորձը՝ Էսսէն քաղաքի Կրուպի գործարանները ռմբակոծելու։ Այդ քաղաքը, ինչպէս յայտնի է, ֆրանսական կայաններից մօտ 800 կիլոմետր հեռու է գտնւում։*

*Իտալական ճակատում յաջողուել է Մոնֆոլկոնից արևելք մի քանի կարևոր բարձրութիւններ խլել թշնամուց։ Տրավինեօլէ, Աստիկօ և Զիմոնէ գետերի հովիտներում կռիւները իտալացիների համար յաջող են անցնում։ Նրանք այս շաբաթ գերել են թշնամուց 400 հոգի։ Ընդհանրապէս իտալական գծերի վրայ եղանակներն արգելք են հանդիսանում պատերազմական գործողութիւններին։*

*Ռումանական ճակատից այս շաբաթ միայն այն տեղեկութիւնն է ստացուած, որ նրանք հիւսիսային և հիւսիս-արևմտեան գծերում դանդաղօրէն առաջ են անցնում և գերել են թշնամուց 373 զինուոր և 4 սպայ։ Ըստ վերջին հաղորդագրութեանց ռումանների մինչև օրս վերցրած գերիների թիւն է 7209 զինուոր, 52 սպայ։*

### ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Սալոնիկի ճակատից այս շաբաթ կարևոր տեղեկութիւններ չեն ստացուած։ Ֆրանսացիք Ֆլորինայից արևմուտք, իսկ սերբերը Կայմակչալանի շրջանում հետևակային կռիւների մէջ են թշնամու հետ։ Մնացած գծերի վրայ կամ թնդանօթամարտ տեղի ունի և կամ հետախոյզ խմբերի ու սաւառնակների բախում։*

*Դոբրուջայի ճակատից դեռ ևս տեղեկութիւններ չեն հրատարակուած, թէև լրագրների մէջ սպրդած լուրերից երևում է, որ այդ տեղի կռիւները խիստ արիւնահեղ են եղել։*

### ԾՈՎԻ ՎՐԱՅ

*Սև ծովում ռուսաց հետախոյզ ռազմանաւերը այս շաբաթ ընկղմել են թշնամու 3 շոգենաւ և մի քանի առագաստանաւ, որոնք ածուխ էին կրում Թիւրքերի համար։*

***

# Ներքին տեսութիւն

### ՅԱՐՄԱՐ ՊԱՏԱՍԽԱՆ

Кавк. Слово-*ում վերջերս լոյս տեսած Մագիստրանտի տըխրահռչակ յօդուածը շատ մեծ յուզում առաջ բերաւ հայկական շրջանների մէջ։ Երբ հսկայ աղէտին ենթակայ հայ ժողովուրդը ներկայիս գրաւուած ու կլանուած է ամբողջովին երկրի վերաշինութեան, տարագիր բազմահազար եղբայրների ֆիզիքական պահպանութեան և նրանց բարոյական ուժերի բարելաւման ծանր աշխատանքով, երբ ժամանակ կամ առիթ չըկար յանկարծ մէջտեղ գնելու Հայաստանի ինքնավարութեան նման մի փափուկ և ծանրակշիռ խնդիր, միւս կողմից համեւրոպական պատերազմի վերջաւորութիւնը—որի հետ կապուած է Հայաստանի ապագայ վիճակի տնօրինութեան հարցը—դեռ շատ մշուշապատ է, այդպիսի պայմաններում ահա հրապարակ եկած Մագիստրանտի յօդուածը՝ բնական էր, որ բոլոր հայերի զայրոյթին պատճառ հանդիսանար և կասկած զարթեցնէր մեզանում յօդուածի գիտումնաւորութեան, գրուածքի թօնի տարօրինակութեան վերաբերմամբ։*

*Այս իրողութեան ծանօթ լինելով մէկտեղ իւրաքանչիւր ընթերցողի հետաքրքրութեան առարկան պիտի հանդիսանար նախ և առաջ յօդուածին հերոսը, որի դիմագծութիւնն ու ինքնութիւնը վիպական վրձինով ժամանակին նկարագրեց արդէն մեր սիրելի գրող Շիրվանզադէն։*

*Այժմ արդէն մեր առջև կանգնած է մի անձնաւորութիւն՝ որ Պետրոգրադից մինչև Թիֆլիս գործ ունի պալատական նրբանցքների և անձնաւորութիւնների հետ։*

*Ահա թէ ինչու յօդուածագիրը համարձակուել է մատների մի թեթև հարուածով Հայաստանի ինքնավարութեան շէնքը փըլցնել և ապա նրա աւերակներն ու փոշիները տեսնելով ուրախանալ ու հրճուել։*

*Յօդուածի հէնց սկզբից հեղինակը մի շատ կտրուկ և վճռական քայլ է անում, հանգուցեալ յայտարարելով Հայաստանի ինքնավարութիւնը, որի հետ քարշ եկող հայ հասարակութեան ազգային շրջանները այնքան վճռականութիւն և ոյժ չունէին, որպէսզի նրան (ինքնավարութեան) հողին յանձնեն և խաչ դնեն վրան և ահա ինք Մագիստրանտը հայ գործիչների «թուլութիւնից» օգտուելով առաջ է նետւում համարձակ և ինքն է սեփական գրչակոթով թղթի վրայ փոս փորում, պահպանիչ կարդում և մի լաւ էլ յետևից բրբչալուց յետոյ հայկական հանգուցեալ ինքնավարութիւնը յանձնում հողին... Այստեղ պ. Մագիստրանտն երևում է մեզ գերեզմանափորի դիմակով և յաղթական է, որովհետև շատ յաջող է կատարել իր փափուկ պաշտօնը...։*

*Այս իրողութիւնն ևս երևան բերելուց յետոյ, այժմ պ. Մագիստրանտի ձեռքից բռնած առաջնորդենք դէպի հայկական հարցի պատմութիւնը և ծանօթացնենք նրա բովանդակութեան և կազմութեան հետ։*

*Հայկական հարցը իր սկիզբն առել է սրանից 40 տարի առաջ՝ Սան-Ստեֆանօյի դաշնագրութիւնից ի վեր, երբ 16-րդ յօդուածով հայկական վեց վիլայէթների բարենորոգման խնդիրն էր դրւում հրապարակը։ Ռուսաստանն է եղել մեր դատի առաջին հիմնադիր պետութիւնը։ Նրանից յետոյ զանազան ձևաւորութիւններով հայկական հարցը արծարծուել է մինչև 1912 թուականը՝ Բալքանեան պատերազմից յետոյ, երբ կրկին անգամ Ռուսաստանի միջնորդութեամբ հայկական նահանգների բարենորոգման խնդիրը հրապարակն է դրուել և արդէն այս անգամ—թէև անձուկ սահմանների մէջ—գործադրութեան առաջնորդուել։ Բարենորոգման ծրագրի հիման վրայ հայկակ. նահանգները բաժանուեցին երկու մեծ շրջանների և ընտրուեցին Հոլանդացի ու Նորվէգեացի (Հօֆ և Վէսթէնինգ) երկու ընդհանուր կառավարիչներ, որոնք մեկնեցին Հայաստան, բայց ներկայ համաշխարհային հրդեհի պայթելուն պէս՝ երբ Թիւրքիան միջազգային բոլոր կապերը խզեց և Գերմանիզմի դրօշակին ներքև մտաւ, լուծեց հայկական բարենորոգման ծրագիրը։*

*Դեռ այդ ժամանակ հայ ժողովուրդը քիչ տուեալներ ունէր, համեմատաբար աւելի նուազ իրաւասութեան հիմունքներ ինքնավարութիւն ստանալու։ Ներկայ համեւրոպական պատերազմը պայթելուն պէս Ռուսաստանն միւս դաշնակիցների հետ կողք—կողքի մանր և ճնշուած ազգերի ազատագրութեան հարցը արծարծեց հրապարակով և յորդորեց, որ մանր ազգերը միանան և կողք—կողքի պայքարեն յանուն իրաւունքի և արդարութեան կռուող մեծ պետութեանց հետ, և այդ յորդորը ձևակերպուեց միջազգային փոխադարձ պարտաւորութիւններով և հիմունքներով և ահա հրապարակ նետուեցան Բելգիան, Սերբիան, Չէրնոգորեան ու Հայաստան։ Վերջինս Կովկասեան ռազմաճակատին վրայ՝ շնորհիւ իւր ռազմական խոշոր նշանակութեան՝ կարողացաւ մեծ դեր խաղալ ի նպաստ Ռուսաստանի, ինչպէս Բելգիան մեծ օժանդակութիւն ցոյց տուեց Ֆրանսիային և եթէ Բելգիան իր կատարած հսկայական զոհաբերութեան փոխարէն պիտի վարձատրուի ու վերականգնի պատերազմից յետոյ, նոյնը պէտք է յուսալ և սպասել Հայաստանի նկատմամբ, որի կորուստները մարդկային թէ նիւթական—իրենց բանակութեամբ ու տարողութեամբ անհաշուելի չափերի են հասնում։ Յայտնի է, որ իւրաքանչիւր ժողովուրդ իր կատարած պարտականութեան չափով ու կշռով պէտք է վարձատրուի և քանի որ այս տարրական ճշմարտութիւնը ունի իւր գոյութեան հաստատուն իրաւունքը, ապա ուրեմն պէտք է զարմանալ, որ հայերի պահանջները յանձինս ինքնավարութեան շատ լոյալ են և սահմանափակ։*

*Հայ ժողովրդի կատարած պարտականութեան և զոհողութեան արժէքը երբէք չի կարող ոևէ ռուս հասարակական անկեղծ կարծիքի կողմից առինչգոյէ համարուել, քանի որ նախ այդ կարծիքը արեան օրերում համակիր է եղել մեզ, յետոյ որ Ռուսաստանին դաշնակից ֆրանսական, անգլիական հանրային կարծիքներ այսօր գորովագին ու ազնիւ զգացումներով համակուած են հայկական արդար դատի հանդէպ։*

*Այժմ երբ արիւնը թափուած է յորդառատ կերպով, երբ հայ ժողովուրդը իւր զոհաբերութեան արիւնածեփ շէնքը կառուցանելով սպասում է արդար հատուցումի, ռուս ժողովրդի առաջաւոր մասի համակրանքը երբէք չի կարող աննպաստ դառնալ մեզի։ Մենք նկատի չենք առնում այն կարծիքը—մի քանի անձնաւորութիւնների սեփականութիւն, որոնք իրենց իսկական ազգի հանդէպ ունեցած պարտաւորութիւնները մոռացած՝ մուշտակաւորուած են օտարի հովերով և շահերով։*

Իսկ այն փաստը թէ Հայաստանը ներկայումս դատարկուած ու ամայացած է, թէ երկրի մէջ քիւրդերն ու թիւրքերը մեծամասնութիւն են կազմում, թէ հայ գաղթականութիւնը բաղկացած է 14 տարեկանից ներքև գտնուող մի ամբոխից... են, Մագիստրանտների մտքի արդիւնք կազմող այս և նման զառանցանքներին ընդդէմ մենք կարող ենք իրական ճշմարտութիւններն և փաստերը մէջտեղ բերել. այդ հարկաւոր է, որովհետև նրանք ոչ տեսել են մեր երկիր և ոչ էլ ծանօթ են «ամբոխ» անուանուած գաղթականութեան, այլ միայն երևակայել են։

Ներկայ պատերազմից առաջ Թուրքական սարսափների ներքև Հայաստանից գաղթել էր արդէն երիտասարդութեան մեծ մասը, դէպի Ամերիկա, Կովկաս, Եգիպտոս և այլուր, որոնց թիւը հարիւր հազարների է հասնում. ուրեմն պատերազմից առաջ մենք երկրից դուրս պատրաստ ունէինք մեծաքանակ մի գաղթականութիւն, բաղկացած՝ բացառապէս տղամարդ ու երիտասարդ դասակարգից։

Յայտնի է նաև, որ պատերազմի ժամանակ Վասպուրականի, Մշոյ դաշտի և Ալաշկերտի հովտի շրջաններից գաղթել է մօտ 300000-ի հասնող մի բազմութիւն, որ այժմ ապրում է ու շնչում երկիր վերադառնալու յոյսով։

Իսկ այն «ամբոխը», որի մասին ակնարկւում է արհամարհական մի ժպիտով (Մագիստրանտների կողմից տաճկահայ ժողովուրդը համարւում է, որպէս մի անգոյն «ամբոխ»... մինչդեռ այդ ժողովուրդը իր ազգային ժառանգութիւնների պահպանման, տոհմային աւանդութեանց ու զգացումների խորութեան տեսակէտից՝ ամենից կենսունակ և առողջ մասն է կազմում հայութեան) այդ կազմուել է վերջերս գրաւուած վայրերից ու քրդական գերութիւնից ճողոպրած հայերից, որոնք բաղկացած են մեծ մասամբ փոքրիկ երախաներից ու կանանցից և փոքրաթիւ մասն են կազմում բուն գաղթականութեան։

Թող վստահ լինեն Մագիստրանտներ, որ հէնց այդ փոքրաթիւ, ամեն տեսակ զարհուրելի տանջանքների բովից անցած մասն էլ մեզ համար աւելի մեծ գին ունի, քան նրանք, որոնք բարոյապէս այլասերուել են և իրենց սրտի խորքերում հայի ամենայետին զգացումն էլ մեռցրել...։

Ուրեմն պատերազմից առաջ գաղթած հարիւր հազարների հասնող հուժկու հայութեան վրայ աւելացնելով վերջին գաղթականների բազմութիւնը և տակաւին Միջագետք և այլուր աքսորուած ժողովրդի մեծաքանակ զանգուածները՝ մենք կստանանք մի պատկառելի գումար, որ կարող է ապագային բազմամարդել ու ծաղկեցնել երկիրը։

Գալով երկրի իսլամ բնակչութեան, նրանք ևս մեծ չափով ենթարկուել են կոտորածի ու աւերումի և մանաւանդ Վանի ու Բիթլիսի շրջանի իսլամ բնակչութիւնը՝ մեծ թւով կոտորուել ու ոչնչացել են. Նրանցից մի մասը, բոլորովին մերկ և անպաշտպան վիճակի մէջ փախել է Տիգրանակերտ և ուրիշ վայրեր, ուր սովի և բժշկական օգնութեան չգոյութիւնից շատերը ոչնչացել են, իսլամ բնակչութիւնը չունի հայ ժողովրդի տոկունութիւն ու դիմացկանութիւն, որով աւելի ենթակայ է ոչնչացման ու փճացման։ Իսկ այն մի քանի հազարի հասնող աւազակաբարոյ և վայրենի քիւրդերը, որոնք մնացել են գրաւուած վայրերում և իշխանութեան փայփայանքին արժանացել՝ նրանցի՞ց պիտի կազմուի Մագիստրանտների յորջորջած իսլամ մեծամասնութիւնը։

Այսպէս է խօսում իրականութիւնը և այսպէս են դասաւորուած այդ իրականութիւնից բղխող տրամաբանական և անվիճելի փաստերը։

Գ. Մագիստրանտը մեզ յայտնում է, որ Ռուսաստանում չկայ «հայկական» կոչուած հարցը, մինչդեռ մենք այդ մինչև այսօր պաշտօնապէս չենք լսել Ռուսաստանում հրատարակուող ոևէ թերթից, չենք լսել ու հաւատացել, որ իւրաքանչիւր անկեղծ և հայրենասիրաբար տրամադրուած ռուս մարդու մէջ «զայրոյթ է առաջացնում հայոց ինքնավարութեան խնդիրը» և եթէ մի բոպէ ընդունենք, որ այդ չարագուշակ արտայայտութիւնը ճիշդ է, ապա ուրեմն այդ անկեղծները շատ ճարպիկ են եղել Մագիստրանտի միջոցով արտայայտելու համար իրենց զայրոյթը...

Բայց մենք չենք վախենում այդ չարագուշակ արտայայտութեանը ունկնդրելով, որովհետև մենք գիտենք, թէ ո՞ւր գոյութիւն ունի Հայաստանի ինքնավարութեան խնդիրը, որի հզօր բարեկամներն ու պաշտպանները անգործ չեն նստել և ժամանակ էլ չունին ականջ դնելու Մագիստրանտների ահազանգերին։

Եւ եթէ մի վայրկեան համաձայնուենք, որ Հայաստանին ինքնավարութիւն չի տրուելու, այլ պարզ անէքսիա է լինելու, ինչպէս որ առհասարակ ամեն մի յաղթող պետութիւն անում է այդ պարտուած երկրի վերաբերմամբ, էլ ինչ էք դէս ու դէն ընկել, պարոններ, խո՞ դրանից էլ վատ չի լինելու, որ դուք այդքան շռնդալից արտայայտում էք թէ «Թիւրքահայերը կստանան այն ամենը—ինչոր նրանք երազել են միշտ—այսինքն՝ հասարակ անէկսիա...» և այս այնպիսի թօնով է արտայայտւում, որ կարծես երկնքից շնորհ պիտի ստանայ հայ ժողովուրդը և եթէ զանազան Սեմենովներ և Մագիստրանտները չը լինէին, այդ շնորհն էլ չէր տրուելու խեղճ հայերին...։

Չէ՞ որ այդպիսիների համար մի երկրի ինքնավարութիւն վերցնել և փոխարէն անեքսիա դնել և անեքսեան վերցնել մի ուրիշ բան դնել, այնքան հեշտ բան է, որքան ամառային կամ ձմեռային գլխարկներ փոփոխել և կամ սեփական ազգանունների «եանց» վերջաւորութիւն հայկական և ամօթ համարելով՝ օտար վերջաւորութեամբ հրապարակ իջնել։

Հայկական հարցը գոյութիւն ունեցել է և ունի ներկայիս, նա կարօտ չէ զանազան մարդկանց տնօրինութեան։ Հայ ժողովուրդի հաւատքը միշտ վառ է եղել և կը մնայ դէպի իր ապագան, նա համոզուած է, որ այն պետութիւնը՝ որի հետ կողք կողքի կռուել ու զոհուել է՝ չի լքի նրան և միւս դաշնակիցների հետ ձեռք-ձեռքի՝ կըտայ հային այն, ինչ որ նրա երկար տարիների բաղձանքն ու արդար իրաւունքն է կազմում։

Հայորդի

---

## ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՇՈՒՐՋ

Սեպտ. 11-ին Կ. Հ. Բ. Ընկ.-ութեան դահլիճում, հայ գաղթականներին նպաստող բոլոր ընկերութիւնների ներկայացուցիչներից բաղկացած մի բազմամարդ խորհրդակցութիւն եղաւ գաղթականական դպրոցների մասին։

Ժողովին նախագահում էր Թիֆլիսի նախկին Առաջն. Մեսրոպ եպիսկոպոսը։ Ժողովը բացաւ Հ. Կ. Կոմիտէի նախագահ՝ պ. Ս. Յարութիւնեան՝ կարդալով Բարաջանեանի ուղարկած զեկուցագիրը, որը հրատարակել ենք «Համբաւաբերի» № 37-ում,

Այդ զեկուցագրի հիման վրայ մօտ 9000 փախստ. երեխաների կրթութեան նախնական նպաստը որոշուել է արդէն։ Զեկուցման ընթերցումից յետոյ ժողովն անցաւ խորհրդակցութեան հիմնական հարցին, թէ ինչպէս կազմակերպելու է առաջիկայի փախստական երախաների կրթութեան գործը։

Կովկասի ուսուցչ. միութեան ներկայացուցիչներ՝ պ. պ. Աւետեանն ու Էզիլեանը ինչպէս նաև թիւրքահայ ուսուցիչներից՝ պ. պ. Ծ. Թորգոմեանն ու Ա. Շալջեանը՝ առաջարկեցին գաղթականական դպրոցների թէ տնտեսական և թէ ուսումնական գործի ղեկավարութիւնը յանձնել Արևմտահայ և Արևելահայ ուսուցչ. միացեալ միութիւններին, որովհետև նրանք ուրիշ ընկերութիւնների նման հազար ու մի գործով զբաղուած չեն և որպէս դպրոցական գործին մասնագէտ կարող են աւելի կանոնաւոր և ներդաշնակ հիմքերի վրայ դնել գաղթ. դպրոցների գործը։

Գ. Ս. Յարութիւնեան, առաջնորդ Մեսրոպ եպիսկ. և ուրիշ-

ներ առարկեցին ուսուցիչների առաջարկութեան դէմ, նկատելով այն փաստը, որ ուսուցչ. միութեան որպէս ոչ հեղինակաւոր մի կազմակերպութիւն չը պիտի կարողանայ դպրոցների տնտեսական և այլ յարմարութիւնների վերաբերեալ վճռական և գործնական դեր խաղալ քան միւս ընկերութիւնները, որոնք հրապարակի վրայ են և ամեն մէկը իւր ուժերի ներածին չափով դպրոցներ ունի բացած։

Յետոյ, որ գաղթականական դպրոցներին հասանելիք նպաստը ուղարկուել է ընկերութեանց ձեռք և նրանք արդէն այդ ուղղութեամբ բաւական աշխատանքներ կատարել են, ուրեմն տնտեսական մասի ղեկավարութիւնը պէտք է միայն նրանց ձեռքում, իսկ ուսումնական մասը լաւագոյն նկատեցին յանձնել փորձուած մանկավարժներից կազմուած մի մարմնի։

Ի վերջոյ ժողովը որոշեց ընտրել հայ կազմակերպութիւնների և տաճկահայ ուսուցչ. միութեանց 2 ներկայացուցիչներից կազմուած մի յանձնաժողով, որ պիտի քննէ դպրոցների վերաբացման հարցը, ուսուցիչների ռոճիկների քանակը, ուսումնական ծրագիր են և յանձնարարէ գաղթ. դպրոցների գործով զբաղուող մարմիններին ի գործադրութիւն։

*

---

## † ԲԺ. Խ. ԲԱՀԱԹՐԵԱՆ

Հեռագիրը գուժեց, որ Շուշում ինքնասպանութիւն է գործել, բժիշկ Խ. Բահաթրեանը, այդ ազնիւ, աշխատասէր և եռանդոտ մարդը թէ դպրոցում, թէ բժշկական ասպարիզում և թէ հասարակական գործերում։

Այդ աշխատանքով ու եռանդով լեցուածը Լազարեան ճեմարանն աւարտեց ոսկեայ մեդալով և այնուհետև նոյն յաջողութեամբ 1881 թուին աւարտեց Մոսկուայի համալսարանի բժշկական ֆակուլտէտը,

Իր մէջ մարմնացած ազնիւ և անկաշառ մարդու գովելի յատկութիւններն էին, որ նրան բժշկական ասպարէզում իբրև հայր էին հանդիսացնում իրեն դիմող ամեն մի հիւանդի վերաբերմամբ առանց ազգի և կրօնի խտրութեան։

Ինչպէս որ գաղափարական գործիչ էր հասարակական գործերում, այնպէս էլ գաղափարական բժիշկ էր իր արուեստի մէջ։ Նրա մէջ խօսում էր ոչ թէ մամոնան, այլ գաղափարը, որին և ծառայեց նա սկզբից մինչև իր կեանքի վերջը։

Աննկուն եռանդն, անսպառ աշխատանքն ու դէպի մարդն ունեցած ջերմեռանդ սէրն էր նրա մէջ մարմնացած, որով նա դէպի հասարակական գործերն էր նետւում անձնուիրութեամբ և առանձին թափով։

Բժ. Բահաթրեանը իր ուժերի թելադրածը չէր խնայում բարի նպատակի ծառայող ոևէ գործի համար։

Տեղի ունեցաւ հասարակական ոևէ աղէտ—օգնութեան գործը կազմակերպողների առաջին շարքում է բժ. Բահաթրեանը։ Կարիք է զգացւում սկսել հասարակական ոևէ գործ՝—ձեռնարկողների առաջին շարքում է կանգնած լինում նաև յարգելի բժիշկը։

Նա եղել է նաև Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Շուշուայ ճիւղի վարչութեան նախագահը։ Ինչպէս ամեն տեղ, նա այդտեղ էլ ցոյց է տուել առանձին եռանդ և արդիւնաւէտ գործունէութիւն։ Ընկերութեան Շուշուայ ճիւղը եղել է նրա սիրած և փայփայած հիմնարկութիւններից մէկը և ոչ մի ջանք չի խնայել իր խելացի մտածելակերպով և գործերով ճիւղի գործունէութիւնը արդիւնաւէտ դարձնելու, բայց ափսոս, որ նրա ունեցած դժուար բուժելի և երկար տարիներ տևող հիւանդութիւնը հնարաւորութիւն չտուեց բժշկին մինչև վերջը գործել՝ ինչպէս Բարեգործական Ընկերութեան, նոյնպէս և այլ հիմնարկութեանց և հասարակական ասպարէզի մէջ։

Ծանր հիւանդութեամբ տառապելով, բժիշկը վերջին տարիները թողել էր հասարակական գործերը և այդ հիւանդութեամբ էլ նա վերջ տուեց իր կեանքին։

Նա եղել է առաջին պետական դումայի անդամ, Շուշուայ թեմական դպրոցի հոգաբարձու,

Հայ-թիւրքական ընդհարումների ժամանակ հայկական ինքնապաշտպանութեան ամենաեռանդուն անդամներից մէկը եղել։

Բժ. Բահաթրեանը ծնուել է Շուշի քաղաքում 1856 թուին և իր կեանքին վերջ տուեց 60 տարեկան հասակում։

Հանգիստ ոսկերացդ, ազնիւ և անկաշառ գործիչ։

Ա. Փարեմուզեան

---

## ԵՐԿՈՒ ԱՄԻՍ ՇԻՐԱԿԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Մինչև յուլիսի 14-ը Շիրակի 29 հայ գիւղերում եղել է 781 գաղթական ընտանիք, 3588 բնակչութեամբ, որից 1695 հոգի արական, 1893 իգական, ինչպէս երևում է հետևեալ տախտակից։

յունիսի 19-ից մինչև յուլիսի 14-ը 1916

| | Գիւղերի անունները | Ընտանիք | Հոգի | Արակ. | Իգական | Դպրոցական հասակ | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | | | | Արակ. | Իգակ. | |
| 1 | Ղզըլ-Ջախչախ | 49 | 179 | 89 | 90 | 29 | 18 | 47 |
| 2 | Փալտրւան | 40 | 146 | 71 | 75 | 22 | 19 | 41 |
| 3 | Բաշ-Գեաղիկլար | 97 | 348 | 157 | 191 | 74 | 45 | 119 |
| 4 | Օրթաքեաղիկլար | 37 | 185 | 95 | 90 | 27 | 23 | 50 |
| 5 | Ներքին-Գեաղիկլար | 29 | 124 | 56 | 68 | 21 | 18 | 39 |
| 6 | Բայրախտար | 25 | 191 | 105 | 86 | 31 | 23 | 54 |
| 7 | Ուղուզլի | 52 | 214 | 98 | 116 | 45 | 36 | 81 |
| 8 | Գորխանա | 47 | 205 | 88 | 117 | 45 | 40 | 85 |
| 9 | Ճաշա | 53 | 211 | 100 | 111 | 39 | 30 | 69 |
| 10 | Արագի գիւղ | 35 | 218 | 110 | 108 | 31 | 36 | 67 |
| 11 | Մեծ Փարկիթ | 4 | 19 | 12 | 7 | 5 | » | 5 |
| 12 | Ղօշավանք | 4 | 26 | 10 | 16 | 2 | 2 | 4 |
| 13 | Անի | 5 | 47 | 22 | 25 | 7 | 7 | 14 |
| 14 | Տայլար | 2 | 8 | 2 | 6 | » | » | » |
| 15 | Հաջի-Վալի | 6 | 33 | 16 | 17 | 4 | 6 | 10 |
| 16 | Սուբական | 5 | 35 | 12 | 23 | 2 | 8 | 10 |
| 17 | Մաւրակ | 49 | 214 | 98 | 116 | 46 | 33 | 79 |
| 18 | Թազաքեանդ | 8 | 32 | 14 | 18 | 5 | 5 | 10 |
| 19 | Ղուխճուղ | 2 | 10 | 3 | 7 | » | 2 | 2 |
| 20 | Կարմիր վանք | 10 | 57 | 29 | 28 | 8 | 8 | 16 |
| 21 | Աղուզում | 4 | 28 | 11 | 17 | 4 | 6 | 10 |
| 22 | Համզաքեսակ | 37 | 153 | 71 | 82 | 27 | 21 | 48 |
| 23 | Ուզունքիլիսա | 26 | 110 | 45 | 65 | 18 | 19 | 37 |
| 24 | Փիրւալի | 23 | 99 | 46 | 53 | 12 | 14 | 26 |
| 25 | Բաշ-Շիրակ | 21 | 129 | 64 | 65 | 24 | 22 | 46 |
| 26 | Թիկնիս | 6 | 23 | 9 | 14 | 4 | 3 | 7 |
| 27 | Օճախղուլի | 35 | 134 | 55 | 79 | 27 | 30 | 57 |
| 28 | Գիւրակդարա | 99 | 374 | 190 | 184 | 65 | 57 | 122 |
| 29 | Ղարամամմադ | 10 | 36 | 17 | 19 | 12 | 6 | 18 |
| | | 78 | 3588 | 1695 | 1893 | 636 | 537 | 1713 |

## ՇԻՐԱԿԻ ՇՐՋԱՆԻ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿԸ

Պետական նպաստի բաշխումը։

Պետական նպաստի բաշխումը փետրուար և մարտ ամիսների համար՝ կատարուել էր ապրիլ ամսի 9-ից. իսկ ապրիլ և մայիս ամիսների նպաստը սկսեցին բաժանել յունիսի 26-ից։

Նպաստի բաշխման ձևը ինձ վրայ այն տպաւորութիւնը

*թողեց, որ այն որոշ չափով կապուած է անձնական քմահաճոյքների և կամայականութեանց հետ և կառավարչական ներկայացուցչի գործելակերպը հետևողական չէր։ Նոր կարգադրութեամբ շրջանի կառավարիչը* (участковый начальникъ) *ներկայացրել էր բարձր իշխանութեանը աշխատանքի ընդունակ 15—55 տարեկան հասակ ունեցող գաղթականների թիւը, 300 հոգու մի ցուցակ։ Այդ երեք հարիւր հոգին նպաստ չըպէտք է ստանային։ Բայց ովքե՞ր էին այդ երեք հարիւր հոգին, ցուցակը ձեռքի տակ չըկար նպաստը բաժանելիս, որ կարելի լինէր իմանալ նրանց անունները։ 15—55 տարեկան եղողների մէջ կային հիւանդներ, կոյրեր, վիրաւորուածներ և այնպիսի անձինք, որոնք թէև 60—70 տարեկան են, բայց ընդհանուր ցուցակի մէջ կարիքը պակաս է ցոյց տուած։ Այդպիսիներից շատերը զրկուեցին իրենց նպաստից և միայն մի քանիսին յաջողուեց նպաստ ստանալ բժշկից հիւանդութեան վկայական ներկայացնելուց յետոյ։ Եղան հիւանդներ և ծերեր, որոնք ներկայ չըլինելու պատճառով նպաստից զրկուեցին։ Շատ մեծ անյարմարութիւն է գաղթականներին գիւղից գիւղ կանչել նպաստի համար։ Կայ մի կարևոր հանգամանք ևս, որ դժուարացնում է նպաստի կանոնաւոր բաշխումը։*

*Գոյութիւն ունեցող ցուցակները չեն համապատասխանում իրականութեանը։ Անունները աղաւաղուած են, ընտանիքի անդամի թիւը կամ աւելի և կամ պակաս է գրուած, տղան աղջկայ տեղ, աղջիկը տղայի, մայրը աղջկայ տեղ, աղջիկը հօր։ Հօր կարիքը որդու կարիքից պակաս, մի խօսքով մի խառնափնթոր բան։ Ուրիշ կերպ էլ չէր լինի, եթէ գաղթականներին սկզբնական ցուցակագրողները լինեն վրացի և պարսիկ գրագիրները՝ հայ լեզուին և հայաստանցիներին անծանօթ մարդիկ։ Եւ զարմանալին այն է, որ չնայած այն հանգամանքին, որ պետական նպաստը դեռ անցեալ տարուանից է տրւում և շրջիկ լիազօրն էլ հայ է եղել, և ուսուցիչ, մինչև այսօր գործը կարգի չի ընկել և այդ բանի շնորհիւ փող բաժանողները պատճառ են գտել և էլի պատճառ են գտնում խեղճ և թշուառ գաղթականներին դժուար պայմանների մէջ դնել, օրերով իրենց յետևից քաշ տալ քաղցած, ծարաւ և վերջն էլ նպաստից զրկել։*

*Նպաստ բաժանող պաշտօնեան այս անգամ գանգատւում էր թէ գործը ծանրացել է, կարգադրութիւն է արած, որ նպաստ ստացող գաղթական ընտանիքը ստորագրէ թէ ինչքան փող ստացաւ։*

*Առաջ այդպէս չէր, փողը տրւում և գրւում էր թէ այսինչ ընտանիքը դրամ ստացաւ։ Այս փաստը ցոյց է տալիս, որ ինչպէս ուզեցել են, այնպէս են բաժանել պետական նպաստը կառավարչական և Բարեգործական Ընկերութեան ներկայացուցիչները։*

*Ճիշտ է, պետական նպաստը բաժանելիս իւրաքանչիւր գիւղից ներկայացուցիչներ են լինում, որոնք ստորագրում են, որ իրենց ներկայութեամբն է նպաստը բաժանած, բայց այդ ներկայացուցիչների ներկայութեամբ վերջնական գործողութիւն չի լինում յայտնի դարձնելու համար, թէ գաղթականները ի՞նչքան նպաստ ստացան, ի՞նչքան փող աւելացաւ և ի՞նչքան փող պէտք է վերադարձուի գանձարան։ Եղան դէպքեր, որ մի քանի անգամ նպաստ ստացող ընտանիքներ էլ նպաստը չըստացան, անունները գրուած չկային ընդհանուր ցուցակում։ Պետական պաշտօնեան պարտաւոր էր տեղն ու տեղը այդպիսիների նոր ցուցակ կազմել և նպաստ էլ պահանջել իշխանութիւնից, բայց այդպէս չեղաւ։*

*Դեռ նպաստ չստացող գաղթականներ կան, որոնք զանազան կողմերից գալիս են Շիրակի շրջանը.*

*Կան նաև շատ գաղթականներ, որ ապրիլ ամսից սկսած մինչև օրս նպաստ չեն ստացել, որովհետև այդպիսիների ընտանեկան ցուցակները իր ժամանակին չեն կազմուած և ուղարկած ուր հարկն է։ Չը կարծէք թէ այդ հանգամանքը գաղթականների կողմից չըհասկացողութեան արդիւնք է. ոչ, գիւղական մարմինները, տանուտէրերը, քեօխուաները, անշահասէր վերաբերմունք չունեն դէպի խեղճ և թշուառ գաղթականները. մինչև փող չեն ստանում, գաղթականներին չեն ցուցակագրում, ցուցակները չեն վաւերացնում, չեն ներկայացնում շրջանի կառավարչին* (Участковому начальнику), *քիչ դեր չի խաղում և վարչական զանցառութիւնը,* завтра, завтра։

*Ինչպէս ապրեն խեղճ գաղթականները, ինչպէս քաշ տան իրենց թշուառ գոյութիւնը։ Աշխատել չեն կարող, մուրալ ամաչում են, գիւղացիների տնտեսական պայմաններն էլ անտանելի են դարձել։ Կենսական մթերքները վերջին աստիճանի թանգացել են։ Մի փութ իւղը ծախւում է 1 ռ. 70 կ. մի փութ ալիւրը 5—6 ռ. գիւղացիները, որ ուզենան էլ, չեն կարող օգնել գաղթականներին։ Կ. Հ. Բ. Ը-թեան Վարչութիւնը նորից գաղթականներին մարդագլուխ երկու ռ. նպաստ տալուց յետոյ՝ ուղարկում է մի որև է գիւղ, բայց թէ այնուհետև հրից, որից փախածները ինչպէս են ապրելու, այդ մասին ոչ մի հոգատարութիւն։*

*Ալիւրի, շաքարի վաճառումը և զգեստի բաժանումը կենտրոնացնելով միայն Կարսում, վարչութիւնը այնքան էլ չի կարող օգնած լինել՝ գաղթականներին։ Քաղաքից հեռու ընկած գիւղերի գաղթական ընտանիքը, որի աշխատաւոր անդամը, եթէ կայ այդպիսին, առհասարակ գիւղից բացակայ է լինում, կամ գնացած է լինում երկիր իր ընտանիքի կորած անդամները գտնելու, որով հնարաւորութիւն չի ունենում Կարս գալու, էժան գնով ալիւր, շաքար և այլ կենսական պիտոյքներ առնելու։ Այդ դժուարութիւնների առաջն առնելու համար, նպատակայարմար կը լինէր շրջանի մի երկու գիւղում վարչութիւնը ունենար ալիւրի և այլ մթերքների պահեստ, որից գաղթականներն դիւրութեամբ կարող էին օգտուել։*

*Գաղթականների առողջապահական դրութիւնը։*

*Իմ շրջագայութեան ժամանակ ես կարծում էի, որ գաղթականների մէջ շատ հիւանդներ կը գտնեմ, աչքի առաջ ունենալով այն կենսական աննպաստ պայմանները, որոնց մէջ գտնւում է գաղթականութիւնը։ Գաղթականների մէջ համարեա հիւանդութիւն չկայ։ Քաղաքների միութիւնը ունի Շիրակի շրջանում, Բաշ-Քեադիկլար գիւղում մի հիւանդանոց և բաժանմունքը Քիւրակդարա գիւղում։ Այդ երկու գիւղերում գաղթականների համար բացուած է թէյարան։ Շատ լաւ կը լինէր, եթէ թէյարանների թիւը Բարեգործական ընկերութիւնը շատացնէր։ Թէյարանների կարիքը զգացւում է համարեա ամեն տեղ։*

*Հիւանդանոցի բժիշկ պ. Մէջլումեանը, մի առանձին կարևորութիւն և նշանակութիւն չէր տալիս այդպիսի հիւանդանոցներին. բժշկի ասելով Քիւրակդարայում եղել է տիֆ հիւանդութիւն, այն էլ տեղացիների մէջ, բայց հիմա այլևս չկայ։*

*Բժիշկ Մէջլումեանին ես պատահեցի մի անգամ ևս մի պարսիկ գիւղում, Տայնալղում, որտեղ պէտք է բաժանէինք պետական նպաստը Անուայ հասարակութեան գիւղերում ապաստան գտած հայ գաղթականներին։ Բանից դուրս եկաւ, որ Տայնալղ գիւղը ոչ մի կապ չունի Անուայ հասարակութեան հետ, և բժշկի այնտեղ լինելը ինձ կասկածանքի տակ գցեց։ Գիւղերի ներկայացուցիչները, որոնք պէտք է ներկայ լինէին նպաստի բաշխմանը, սկսեցին դժգոհութիւն ցոյց տալ, թէ ինչ կարիք կար Ղօշավանքի, Տայրոտի, Անուայ, Ճաշայի և այլ գիւղերի գաղթականներին նեղութիւն պատճառել, բերել 20 վերստ հեռաւորութեան վրայ գտնուած մի այնպիսի գիւղ, որտեղ մի բաժակ ջուր չեն տալիս մարդու և որտեղ բուն է դրել տիֆ հիւանդութիւնը։ Բժիշկը ինքը վկայեց, որ գիւղում հիւանդութիւն կայ։ Բայց որովհետև պետական պաշտօնեան պարսիկ էր, իրեն համար հաճելի էր եղել վէր գալ պարսիկ գիւղում, աչքի առաջ չունենալով գաղթականի դըրութիւնը։*

*Մի անգամ էլ պէտք է կրկնեմ, որ շատ անյարմար է գաղթականներին գիւղէ գիւղ բերել։ Ընտանիքները իրենց բոլոր անդամներով հնարաւորութիւն չեն ունենում ներկայ լինել և այդ հանգամանքը զանազան թիւրիմացութիւնների տեղիք է տալիս։*

Լաւ կը լինէր որ իւրաքանչիւր գիւղի գաղթականները իրենց տեղում ստանային իրենց նպաստը, այն ժամանակ ամէն մի ընտանիք իր բոլոր անդամներով ներկայ կը լինէր նպաստը բաժանելիս և ամէն մի անգամ իր բաժինը ինքը կստանար։

Լիազօր Շիրակ և Նախիջ. շրջանների Աթ. Խնկոյեանց

---

## ԱՌԱՋ. ՄԵՍՐՈՊ ԵՊԻՍԿ-ԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՈՂՋԵՐԹԻ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, սեպտեմբերի 11-ին, Թիֆլիսի առաջնորդարանում, ցերեկուայ ժամը 12-ին, կայացաւ ողջերթի հանդէս Վրաստանի և Իմերէթի թեմի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսի նոր պաշտօնատեղին մեկնելու առթիւ։

Երբ Մեսրոպ եպիսկոպոսը ընդունելութեան դահլիճ մտաւ, նրան մօտեցաւ Թիֆլիսի քաղաքագլուխ Ալ. Խատիսեանը և քաղաքային վարչութեան կողմից մատնանշել, որ նա իր գործունէութեան ընթացքում կարողացել է բարձրաստիճան անձանց մօտ բարձր պահել իր կոչումը, և ցաւ յայտնեց, որ սրբազանը ստիպուած է թողնելու այնպիսի նշանաւոր թեմի առաջնորդութիւնը, որը կարիք ունի գործունեայ վարիչների։

Այնուհետև երախտագիտական շնորհակալութիւն յայտնեցին Մեսրոպ եպիսկոպոսին նրա հանրաշահ և շահաւէտ գործունէութեան համար և ուղերձներ կարդացին հետևեալ հիմնարկութիւններից. Կ. Հ. Բ. Ընկերութեան և Հ. Կ. Կոմիտէի կողմից Ս. Յարութիւնեան՝ կոնսիստորիայի պաշտօնեաների կողմից՝ Յովհ. աւ. քահ. Մարտիրոսեան, Ներսիսեան դպրոցի հոգաբարձութեան կողմից՝ Լ. Տիգրանեան, Յովնանեան օրիորդաց դպրոցի հոգաբարձութեան կողմից՝ Ա. Արեղեան, Գայանեան օրիորդաց դպրոցի հոգաբարձութեան կողմից՝ Ն. Տէր-Ղևոնդեան, հայկական կրթական կուլտուրական և բարեգործական հիմնարկութիւնների կողմից Գ. աւ. ք. Աղանեան, Ազգային Բիւրօյի կողմից՝ Յ. Բոչարեան, Հայուհեաց Բարեգործական ընկերութ. կողմից՝ տ. Օգանէզեան, Յովնանեան օրիորդաց դպրոցի ուսուցչական խմբի և նոյն դպրոցի չքաւոր աշակերտուհիներին խնամող ընկերութեան կողմից՝ Յով. Տէր-Միրաքեան, ս. Սարգսի և ս. Գէորգի միացեալ դպրոցների հոգաբարձութեան կողմից՝ Յակոբ Աղաբաբ, Փոթիի հայ հասարակութեան կողմից Ա. Ապրիլեան, Կովկ. Հայ գրողների Ընկ. կողմից Մ. Բերբերեան, փախստականներին օգնող հայ կազմակերպութիւնների Միութեան և Հայոց Գիւղատնտեսակ. Ընկ. կողմից Աւ. Սահակեան և «Հորիզոն»-ի կողմից Արշ. Ջամալեան։ Ճառախօսներից մի քանիսն իրենց վրդովմունքն արտայայտեցին, որ առանց թեմի ժողովրդի տրամադրութիւնները հաշուի առնելու՝ նրա առաջնորդներին փոխում կամ նրա գլխին նոր առաջնորդներ են կարգում։

Վերջում Մեսրոպ եպիսկոպոսը ողջերթ մաղթողներին պատասխանեց հետևեալ խօսքերով։

«Երբ սրանից չորս տարի առաջ եկայ այստեղ, ինձ բարի գալուստ մաղթող հասարակական գործիչներին խոստացայ լինել ժողովրդի հետ, ամէն բան անել ժողովրդի համար, իմ խոստումը իրագործելու փաստը հաստատւում է ձեր կողմից։ Եւ ինձ համար ինչ կայ աւելի մխիթարական՝ քան այն պատիւը, որին ինձ արժանացնում էք այսօր։ Ես իբրև հոգևորական աշխատել եմ խօսքի մէջ բովանդակութիւն դնել, խօսքը և գործը ներդաշնակել. ահա այս է եղել իմ ղեկավար սկզբունքը։ Ասպարէզ եկած որևէ հարցի լուծում տալիս՝ չեմ առաջնորդուել նրանով, թէ իմ որոշումները ում դիւր կը գան, ում չէ, այլ արել եմ այն, ինչ բղխել է իմ խոր համոզմունքից։ Ես եղել եմ ոչ թէ հրամայող, այլ հրամանակատար՝ յօգուտ հայ ժողովրդի ու եկեղեցու»։

Մեսրոպ եպիսկոպոսը իր պատասխան ճառը վերջացրեց շնորհակալութիւն յայտնելով այն յարգանքի և պատուի համար, որ արժանացրեց նրան հայ հասարակութիւնը։

Եպիսկոպոսի խօսքերն ընդունուեցին ծափահարութիւններով, որից յետոյ առանձին-առանձին բարի երթ մաղթեցին բոլոր ներկայ եղողները։

Հանդիսին ներկայ էին ողջերթ մաղթող հաստատութիւնների վարիչ մարմինները իրենց ամբողջ կազմով, մի շարք հասարակական գործիչներ և բազմաթիւ հասարակութիւն, որ ծայրից ծայր լցրել էր առաջնորդարանը։

Հանդէսից յետոյ ներկայացուցիչները հիւրասիրուեցին սուրճով և քաղցրեղէնով։

---

## ԳԱՒԱՌ

ՕԼԹԻ. ԿԱՐՍԻ վիճակ 6 սեպտեմբերի.—Սրանից երկու ամիս առաջ Օլթի աւանում Զինուորական իշխանութիւնը հսկում էր ամէն ինչի վրայ և կար գեղեցիկ կարգադրութիւն։ Իսկ այժմ երբ մտնում ես յիշեալ աւանը, ամենայն ինչ դատարկուած է, խանութների մեծ մասը փակուած է և ուտելու ոչինչ չես գտնում։ Կանգուն մնացած շէնքերը ամբողջն էլ դատարկ են։ Բնակիչների մեծ մասը, որ գաղթել էին Ալէքսանդրապօլ, դեռ չեն վերադարձել. իսկ Ռուսաստանի խորքերը գնացածները հետզհետէ խմբերով վերադառնում են Օլթի։

Գարնան սկզբին վերադարձող հայ գիւղացիք, տեղ տեղ դրել են բոստաններ և ցանած են եգիպտացորեն (լազուտ)։

Օլթիի շրջանում եղած ութ հայ գիւղերի բնակչութիւնն էլ լրիւ վերադարձել են և իւրաքանչիւր գիւղում կայ 8—15 լուծ եզ։ Այստեղ ցանքը լինում է և աշնան և գարնան, հողագործ գիւղացիք մտատանջութեան մէջ են, թէ որտեղից ճարեն սերմացու աշնան ցանքի համար։ Շրջանիս Հայ Լուսաւորչական 9 եկեղեցին էլ ենթարկուել են խիստ կողոպտման. ներկայումս զըրկուած են թէ սրբազան անօթներից և թէ բոլոր հոգևոր պարագաներից։

Իսկ մի քանի հայ գիւղերի եկեղեցիքն էլ փոխել են ռուսականի, որով տեղահան են արել մնացած խաչկալները, քանդել են քարեայ սեղանները ու վէմերը վերածել են ռուսական ձևի։

Հայ գիւղացիք սկսել են պատրաստել և վերանորոգել թէ եկեղեցիքը և թէ իրենց տների քանդուած մասերը։ Մի քանի գիւղեր ունեն եկ. ծխական դպրոցների սեփական շէնքեր, բայց դըժբախտաբար չեն կարողանում ուսուցիչ ճարել նիւթական միջոց կամ դրամը չլինելու պատճառով։

Այս տարի այդ դպրոցները փակ կը մնան, եթէ դրսից նըպաստ չըլինի. ամէն մի գիւղ ունի 50—60 աշակերտ մօտաւոր չափով։

Իսպիրի և Բաբերդի բնակիչ այլ մարդկանցից շատեր տարիներ առաջ գնացել էին Ռուսաստանի քաղաքները առևտրական գործով.

Այդպիսիները այժմ գալիս են իրենց կորած ընտանիքները փնտրելու, երբ չեն գտնում, իրենց երկրի մէջ պատահած կին թէ աղջիկ հետները բերում են ու ամէն մինը սեփականացնում իրեն և գաղտագողի ձևով գիւղերում կատարւում է նրանց պսակը և յետոյ կրկին վերադառնում են Ռուսաստան նոր ձեռք բերած ընտանիքով։

Սարգիս քահ. Խալաթեան

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Սղնախի Յ. քահ. Տէր Նիկողոսեանից՝ Գ. Պապովեանի ընթրիքի ժամանակ ժողոված յօգուտ փախստականների 40 ռ.

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների՝

ա) պ. Արշակից . . . 50 ռ.

բ) Լօզովայա կայարանից՝ պ. Կ. Մարտիրոսեանից 50 ռ. որից 32 ռ. յօգուտ փախստականների և 18 ռ. յօգուտ քրդերի ձեռքում գերի հայերի ազատագրման։

***

Մեծ. պարոն Տիգրան Աֆրիկեանից շնորհակալութեամբ ընտացուած է ներկ. ուսումն. տարուայ գպրոցական նպաստի առաջին կիսամեակը 4150 ռ.։

### ՃԻՒՂԵՐ

Շուշի.—Օգոստոսի 30-ին կայացաւ Կ. Հ. Բ. Ընկ. Շուշուայ ճիւղի անդամների ընդհանուր ժողովը։ Նախագահ ընտրուեց պ. Աւլան Շահնազարեան, քարտուղար պ. Ա. Այգինեան։ Օրակարգի առաջին հարցն էր Վարչութեան 1914 թ. յունուարի, մինչև սոյն տարուայ Օգոստոսի 1-ը գործունէութեան և հաշիւների քննութիւնը։ Այդ հաշիւներից երևում են, որ Վարչութիւնը առ 1-ն յունուարի 1914 թ. ունեցել է կանխիկ դրամ 430 ռ. 33 կ. —1914 թ. ընթացքում մուտք եղել է 1482 ռ. 48 կ., ծախք 1580 ռ. 39 կ։ Առ 1 յունուարի 1915 թ. մնացորդ գումար 332 ռ. 42 կ. 1915 թ. մուտք եղել է 1118 ռ. 44 կ. ելք 977 ռ. 41 կ։ Առ 1-ն յունուարի 1916 թ. մնացորդ դրամ 473 ռ. 45 կ։ Մուտք 1916 թ. մինչև օգոստոսի 1-ը եղել է 729 ռ. 26 կ. և ծախք նոյն ժամանակի 815 ռ. 16 կ. որպիսի հաշուով առ 1-ն օգոստոսի ներկայ թուի մնում է 387 ռ. 55 կ.։ Այնուհետև տեղի ունեցաւ նոր Վարչութեան ընտրութիւնը և ձայների առաւելութեամբ ընտրուեցին՝ բժ. Տէր-Գաբրիէլեան, Արր. Այգինեան, Ան. Տէր-Միքայէլեան, Աս. Շահնազարեան և Յար. Թումեան։

***

Ստացուած է Մարեօպօլից յօգուտ գաղթականների Հ. կ. կոմիտէի ձեռքով 100 ռ.

Ալավերդի կայարանից Եախշիբէգովից 15 ռ.

***

Ախալցխա. Կ. Հ. Բ. ընկ-եան Ախալցխայի ճիւղի որբանոցի օգտին օգոստոսի 20-ից սկսեալ ստացուել են նուէրներ հետևեալ անձերից և համայնքներից։

Եղբ. Մնոյեաններից—100 ռ., Ախալցխայի հայ-կանանց Բարեգ. ընկ-ից—130 ռ., Կ. Հ. Բ. Ընկ. Արասթումանի ճիւղից 57 ռ., օր. Շ. և պ. Տիգր. Աղնաւուրեաններից՝ իրանց հանգուցեալ եղբօր՝ Ստեփանի յիշատակին—50 ռ., Մ. Ծատուրեանի խնջոյքում հանգանակած—17 ռ., Գ. Բունուսուզեանից—25 ռ., Խ. Եորտանեանից—3 ռ., Յ. Պետրոսեանից—3 ռ., տիկ. Ս. Խաչատրեանից—1 ռ., Հ. Աւագեանից—3 ռ. 30 կ., Պ. Ճանճուլեանից—1 ռ. 50 կ., Խ. Էրանեանից—2 ռ. 40 կ., պ. Ս. Սվաղճեանի միջոցով հանգանակած Տամալայ գիւղի հասարակութիւնից —55 կոտ ցորեն և գարի, 30 ф. պանիր, 11 ф. իւղ, 18 ռ. 55 կ. փող, 1 զոյգ գուլպա։ Մեծ-Պամաճ գիւղի հասարակութիւնից—30 կոտ ցորեն և գարի, 13 զոյգ գուլպա, 15 կտոր շորեր, 1 զոյգ ոտնաման և 3 ռ. փող։ Փոքր Պամաճ գիւղից—22 կոտ ցորեն և գարի, 12 ф. պանիր։ Սազիլի հասարակութիւնից՝—11 կոտ ցորեն, $3\frac{1}{2}$ կոտ գարի։ Խակ գիւղից—$5\frac{1}{2}$ կոտ ցորեն հայ գիւղացիներից, $5\frac{1}{2}$ կոտ թուրքերից։ Ղուլալիս գիւղից—$3\frac{1}{2}$ կոտ ցորեն, Օրալ գիւղից—17 կոտ ցորեն, 15 ֆունտ պանիր, 1 զոյգ գուլպա և մէկ ռ.։ Ծիրայ գիւղից—$16\frac{1}{2}$ կոտ ցորեն և $5\frac{1}{2}$ կոտ գարի, Ծուղրուտ գիւղի հասարակութիւնից—$7\frac{1}{2}$ կոտ գարի, Ճաճարակ գիւղի հասարակութիւնից—$15\frac{1}{2}$ կոտ ցորեն 1 կոտ գարի, 1 զոյգ գուլպա և 4 ռ.։ Նոյնպէս ստացուել են նուէրներ Գ. Զթչեանից—1 ռ., Սարգիս Անանիկեանից—3 ռ., Ս. Զաքարեանից—2 ռ., Պ. Ջամանեանից—1 ռ. 50 կ., տիկ. Շ. Աթաբէգեանից—10 ռ. և այլն, որոնց մասնախումբս յայտնում է իր շնորհակալութիւնը։

Մասնախմբի նախագահ՝ Խ. Թէխմիշճեան

***

Արմաւիրի ճիւղ։—Խորհուրդը ստացել է Արմաւիրի ճիւղի 1915 թուի հաշիւը, որից երևում է, որ նոյն թուին եղել է մուտք ա) անդամավճարներ 279 ռ., բ) մի բաժակ թէյ-ից գոյտ արդիւնք 4102 ռ. 2 կ., գ) նուիրաբերութիւններ յօգուտ փախստականների 3718 ռ. 40 կ., դ) յօգուտ պատերազմից վնասուածներին 1217 ռ., ե) երեկոյթներից, ներկայացումներից 5390 ռ. 99 կ., զ) ի պահեստ դրուած գումար 308 ռ. 47 կ. ընդամենը 15,015 ռ. 88 կ. ծախք եղել է՝ ա) հիւանդանոցի վիրաւոր զինուորներին նուէր և նպաստ պահեստների ընտանիքներին 2346 ռ. 10 կ., բ) փախստականներին տրուած է նպաստ 7137 ռ. 10 կ., գ) նպաստ աշակերտներին և դպրոցներին 1585 ռ., դ) այլ և այլ ծախսեր 650 ռ. 53 կ. ընդամենը 11,718 ռ. 73 կ.։

## Քրոնիկոն

Այս տարուայ ձմեռային թատերաշրջանի համար՝ հայ դրամատիկ ընկերութիւնը արդէն կազմել է իր խումբը, մեր բեմի լաւագոյն և երիտասարդ ուժերից Սևումեանի բեմխորութեամբ։ Խումբը կըտայ իր հերթական ներկայացումները Արտիստական Թատրոնում։ Առաջին ներկայացումը կը կայանայ ամսիս 26-ին։ խաղալու են «Պէպօ»ն նոր և ինքնուրոյն բեմադրութեամբ։

***

Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկ. հրատարակած և Ար. Փարեմուզեանի կազմած «Թէ ինչպէս պէտք է գրադարան-ընթերցարաններ հիմնել և կառավարել» գրքից ընկերութեան Խորհուրդը մի-մի օրինակ ուղարկում է իր ճիւղերին։

***

Մեր թերթի խմբագրութեան անդամ-Քարտուղար Պ. Ստեփանեանց երկու շաբաթով բացակայելու է Թիֆլիսից։

***

Յովհաննեան դպրոցի հոգաբարձութիւնը որոշել է իր խնամքին յանձնուած դպրոցում Մեսրոպ եպիսկոպոսի անունով մի ձրիավարժ աշակերտուհի պահել։

***

Առաջիկայ հոկտեմբերի կէսերին Մոսկուայում նշանակուած է լրագրողների համագումար, որին մասնակցելու համար հրաւիրուել են ռուս, հայ, վրացի և թուրք ժամուլի ներկայացուցիչները։

***

Մի խումբ իրաւասուներ դիմել են քաղաքային վարչութեան և առաջարկել նախկին քաղաքագլուխ Ա. Ս. Մատինեանի կրթական կարիքների համար կտակած գումարից յատկացնել 50000 ր. Հաւլաբարում ժողովրդական տուն հիմնելու համար։

***

1916—1910 թ. թ. սպիտակ տոմսաւորների առաջիկայ բըժշկական վերաքննութեան պատճառով այն հիմնարկութիւնները, որոնք աշխատում են պետութեան պաշտպանութեան համար, կարող են մինչև սեպտեմբերի 28-ը միջնորդել իրանց գործերի մէջ աշխատող սպիտակ տոմսաւորներին ժամանակամիջոց տալու մասին։

***

Սեպտեմբերի 13-ին առաւօտեան Բագու մեկնեց Մեսրոպ

եպիսկոպոսը, որտեղ 3 օր մնալուց յետոյ ուղեւորուեց իր պաշտօնատեղին՝ Աստրախան։

* * *

Թիֆլիսում հեռագիր է ստացուել, որ Կրասնօեարսկում (Ենիսէյսկի նահանգ) ամսիս 11-ին վախճանուել է Սուրէն Սպանդարեանը («Նոր-դար»ի խմբագիր Ս. Սպանդարեանի որդին)։

* * *

Կովկասի Հայոց Բարեգ. Ընկ. Տուապսէի ճիւղը հեռագրով յայտնել է քաղաքագլուխ Ալ. Խատիսեանին, որ նահանգապետը կարգադրել է երեք օրուայ ընթացքում հեռանալու Կուբանի և Սեւ-ծովեան շրջաններում գտնուող թիւրքահպատակ հայերին, որի համար խնդրում է պ. Ալ Խատիսեանին միջնորդելու, ուր հարկն է, որ փոխուի վերոյիշեալ կարգադրութիւնը, նկատի ունենալով այն հանգամանքը, որ հայերը ներկայ վայրկեանին թափում են իրանց արեան վերջին կաթիլը։

* * *

Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը ելեքտրաքարշի 5 կոպէկանոց տոմսակները դարձնում է 6 կոպէկ և աբօնեմենտի գըրքոյկները, որոնք պարունակում են 30 տոմսակ և վաճառւում են 1 ր.—20 կոպէկով (իւրաքանչիւր տոմսակը 4 կոպ.), վերացւում են։ Ասել է թէ՝ մինչև հիմա եղած 4 կոպէկանոց տոմսակները դարձնում են 6 կոպէկ. կամ թէ մի անգամից տոմսակների գինը բարձրացնում են 50%-ով։ Եւ հաշւում են, որ այդ ձևով քաղաքի եկամուտը աւելանալու է մօտ 1/2 միլիոնով,

Այս ծանրութիւնը ընկնելու է գլխաւորապէս այն մարդկանց վրայ, որոնք ապրում են քաղաքի ծայրերում, իսկ քաղաքի ծայրերում ապրողները ազգաբնակութեան չքաւոր դասն է։

Ցանկալի է քաղաքային վարչութիւնը, որ կռւում է թանկութեան դէմ, միանգամից չթանկացնի տոմսակների գները 50%-ով, այլ 25%-ով, այն է աբօնիմէնտի գրքոյկները փոխանակ 1 ռ. 20 կ. վաճառեն 1 ռ. 50 կոպէկով։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԹԻՒՐՔԻԱՅԻ ԵՒ ԻՒՐ ԵՒՐՈՊԱՅԻ ՎԱՐՁԿԱՆՆԵՐԻ ԵՐԿԵՐԵՍԱՆԻ ԽԱՂԸ

Թիւրքական զինուորական կատաստրոֆը, որ կովկասեան ճակատի ռուս-հայկական անպարտելի բանակների ձեռքով սկս[illegible], թիւրքերի Էրզրումից դուրս քշուելու օրից նրանց և համաձայնութեան պետութիւնների մէջ անջատ մի հաշտութեան կարելիութեան մասին շշուկներ առաջ բերեց։

Մենք արձանագրում ենք այդ շշուկները ոչ թէ նրա համար, որ այդպիսի բանին մենք սպասել ենք, այլ նրա համար, որ գըտնուեցին այնպիսի գրողներ, որ այդ վարկածին հաւատք չ'ընծայելով հանդերձ՝ անկարելի էլ չեն համարում նրա իրականացումը և մենք կասենք նաև, որ համարեա մինչև իսկ մի թագուն գըգուած բաղձանք կայ, որ բանն այդպէս էլ լինի։ Թուրքին հետ անջատ հաշտութեան կարելիութեան մասին մտածելը կը նշանակէ խորհել, որ ներկայ պատերազմի վախճանից յետոյ էլ պէտք է դեռ շարունակի գոյութիւն ունենալ առաւել կամ նուազ ընդարձակ մի Թուրքիա։ Եւ Թուրքիայի հետ անջատ հաշտութեան կողմնակիցներ միաբանելով բոլոր նրանց հետ՝ որ գըրում են հանդէսներում թէ գրքերում իրենց նիւթ ընտրելով այն հարցը, թէ ապագայի խաղաղութեան վեհաժողովը ինչ կերպի մի ձև տալու է Եւրոպայի և իւր hinterland-ին, սաստիկ վերապահ են, եթէ չ'ասենք նոյն իսկ թշնամի, արիւնի մէջ խեղդուած ժողովուրդների յարութիւն առնելուն և չեն վարանում որևէ վէճից դուրս գնել ապագայում դեռ մի Թուրքիայի հաստատ գոյութիւնը։

Սրանք ասում են, որ «այսօրուան կռիւը, որ թէև նուիրականացել է ազգայնութեան, իրաւունքի և արդարութեան անուններով, եթէ կամենաք մինչև իսկ, որ յանցագործութիւն է պահել արիւնարբութեան դարաւոր կայսրութիւնը, բայց և շատ լաւ էլ կարելի է աչքաթող անել, մինչև իսկ ոտնատակ տալ նրանց, որ յանուն ազգութեան սկզբունքի արիւնաքամ են լինում դարերից ի վեր։»

Մենք այստեղ մի անգամ ևս ճակատ առ ճակատ հանդիպում ենք եղեռնին՝ Եւրոպական այն զզուելի հիւանդութեան, որը մենք անուանեցինք թրքասիրութիւն։ Մենք չենք իմանում զգացողութեան և մտայնութեան այս օրինակ մի հակադարձութեան պատճառները, թէև գիտենք, որ այս բան շատ ձեռնտու է թիւրքի աւանդական երկերեսանի քաղաքականութեան, եթէ դեռ չասենք, որ ուղղակի նրանից էլ բղխում է։ Ընդհանրապէս վերցրած թիւրքը կեղծաւոր և խարդախ է. բայց, չափից աւելի կեղծաւոր և խարդախ է այն քաղաքականութիւնը, որը վարում են թէ երիտասարդ և թէ հին թիւրքերը, ինչպէս և բոլոր նրանք, որ պաշտպան են թէ անցեալի և թէ ներկայի կառավարութիւնների կուսակիցներին և թէ հակառակորդներին։

Սկսած Գէօբէնի և Բրէսլաուի ապօրինի հիւրընկալութեան օրից, հանրութեան վստահութիւնը ի չարը գործ դնող Ստամբոլի «մարդասպանութեան արհեստաւորների» նկատմամբ ցոյց տըրուած դիտաւորեալ և անբացատրելի համբերողութիւնից (առանց որի թերևս տեղի չունենային հայերի տանջանքները և գուցէ և պատերազմն էլ վերջացած լինէր) թիւրքերի այլևս ծայրայեղութեան հասած անպատկառ բրօվօկացիաները, որ վերջին խօսքն եղաւ առանց յայտարարելու պատերազմ սկսել Ռուսաստանի դէմ, մենք կարծում ենք, որ առողջ դատողութեան տէր որ և է մարդ չի կարող առանց նողկանքի լսել Թուրքիայի անմեղութեան մասին, մի անմեղութիւն՝ որ արատաւորուած է տեւտոնական բարբարոսութեամբ…։

Եւ սակայն բազմաթիւ եւրոպացի գրողներ առաւել կամ նուազ առերես ցաւակցութեամբ ասացին, որ «թիւրքերը այնպէս էլ չար տրամադրուած մարդիկ չեն։» Մենք չը գիտենք թէ սրանք բարեմտութեամբ, թէ չարամտութեամբ են խաղում թիւրքի խաղը, որը ինչպէս ասացինք, յար և նման լինելով Օսմ. քաղաքականութեան աւանդութիւններին, մի երկերեսանի խաղ է։ Թիւրքիան դաշնակիցն է կենտրոնական կայսրութիւնների։ Որ Թուրքիան մատուցեց և դեռ մատուցանում է իւր դաշնակիցներին ահագին ծառայութիւններ, կասկածից դուրս է։ Թիւրքիան մղուած հէնց գերմանացիներից, կոտորեց, տեղահանեց մօտ կէս միլիոն հայեր։ «Բայց չը նայած այն բոլորին, ասում են յիշեալ թիւրքի երկերեսանի խաղը խաղացող գրողները, թիւրք ժողովուրդը համամիտ չէ իւր կառավարութեան հետ, աւելին կասենք դեռ, թուրք ժողովուրդը իւր համակրութեամբը դաշնակից պետութիւնների կողմն է»?։

Կամենո՞ւմ էք գիտենալ թէ ինչպէս է լինում այսպիսի ձեռընտու համակրութիւնը, այդ ձեզ կը բացատրէ քառեակ համաձայնութեան երկիրների մամուլի շնորհներին արժանացած «Կարմիր սուլթանի» տեղակալներից մին՝ գեներալ Շէրիֆ փաշան, որ ֆրանսիական մի շատ տարածուած օրագրի առաջին երեսի առաջին սիւնակների վրայ գրեց.

«....Որ նրանք կռւում են ազգութեան սկզբունքի և զինուորականութեան ջախջախման համար....»

«Ոչ թէ թիւրք ժողովուրդը, այլ մի փոքր թուով երիտա- «սարդ թուրքեր, աւելի ճիշտը, մի Էնվէր, մի Թալաաթ, մի Ճա- «հիդ և մի քանի ուրիշներն են՝ որ դաշնակցել են կենտրոնի կայ- «սրութեանց հետ։»

Եւ կիսալուսնի միւսլիմանական գերընական օրգանիզմը

նկարից յուզուած Օռլէանի եպիսկոպոս սրբազան Տուշէն Պարիզի ս. Մադլէն եկեղեցում ի ներկայութեան մինիստրների և այլ բարձրաստիճան անձնաւորութիւնների քարոզելիս այսպէս ասաց․

«Աղաչում եմ, պաղատում եմ։ Եթէ պատահի, որ մեր զօրքերը չկարողանան այնպէս անել, որ մեր դիւանագէտները կարենան ազատել Հայաստանը Թիւրքի ճիրաններից, և դրանից յետոյ այդ դժբաղդ ազգից մնացողները մի մի անիշխանականներ լինելով ռումբերով կործանեն Կ. Պոլիսը, ես, եպիսկոպոս Քրիստոսի այս սեղանի առաջ չեմ վարանում յայտարարել, որ նրանց անելիքը լինելու է բնական և ոչ միայն օրինական, այլ սուրբ և նուիրական։»

Մարդկայնութեան և քաղաքակրթութեան ամենատարրական զգացումի ամենավտանգաւոր թշնամիները Գերմանիայից և Աւստրիայից և նոյն ինքն Թուրքիայից առաջ այս վերջին տէրութեան աղջամղջին մթապարար գործող բարեկամներն են։ Եւ նկատուած է, որ թիւրքասէրները թիւրք խաժամուժի բարեկամները չեն, այլ միայն օսմանեան փտած կառավարութեան բարեկամներ, ուստի գազանութեան, արիւնարբութեան ամենանողկալի մի օջախի բարեկամներ։

Այս չարագործների հնարքները մինչև այսօր այնպիսի մի աջողութիւն են գտել, որ մենք ստիպուած ենք մի զարհուրելի բան ասել։ Շատ եւրոպացիք, որ հասարակական գործերում ազդեցութիւն ունին, ոչ միայն չեն ատում թիւրքերին, այլ աշխատում են մինչև իսկ ուրիշների մէջ էլ սնուցանել մի այնպիսի անբարոյական տրամադրութիւն թիւրքերի վերաբերմամբ, որ վերջիններս, եթէ աշխարհիս կէս բնակչութիւնն էլ կոտորեն, պէտք է անտարբեր մնալ, միայն թէ չդիպչեն Եւրոպային կամ աւելի ճիշտն ասենք «իրենց Եւրոպային», չդիպչեն իրենց շահերին և իրենց հարստանալուն համար բացուեն նոր հորիզոններ թէկուզ նորանոր կոտորածների գնով։

Հարկ է ապստամբել այսօրինակ անարգ մի հոգեբանութեան դէմ։ Ժամանակ է, որ աշխարհը ընդհանուրի շահերի խաթրուն մի քիչ աւելի լաւ լինի։ Մարդկութեան համար այսպիսի բարիք ձեռք բերելը հարկ է, որ քաղաքակիրթ երկիրների հասարակաց կարծիքը զօրավիգ ունենալով իրեն՝ քառեակ համաձայնութեան կառավարութիւնների քանիցս յանձն առած հանդիսաւոր երաշխաւորութիւնները ստիպի նրանց յարգել այդ յանձնառութիւնները։

Եւ քանի՜սը, որոնց, հասարակաց կարծիքը մանաւորապէս պէտք է աչքի առաջ ունենայ, այսպէս ասած «մարդիկ ոմանք» են, որ մարդկային դժբաղդութեան գնով ճարպակալել, գիրացել են։ Սրանց մէջ ամենից ատելին և վնասակարը նրանք են, որոնք սիրում և արդարացնում են թիւրքերին։ Սրանք կ'ուզենային, որ Թիւրքիան մի անգամ էլ փրկուի, որպէսզի նրա զոհերը ոտնատակ արուին և այժմեանից են ցանում ապագայ անխուսափելի տարաձայնութիւնների սերմերը, որոնք ստուգապէս առաջացնելու են մի նոր պատերազմ։ Ապացուցուած լինելով, որ թիւրքերը բնաւ ընդունակ չեն ինքն իրանց կառավարելու, մի թագաւորութիւն, առաւել ևս մի թիւրք կայսրութիւն, որ ներկայ պատերազմից յետոյ էլ եթէ գոյութիւն ունենայ, լինելու է մի ատելի կայծ, որ առաջին իսկ յարմար առթիւ բռնկեցնելու է եւրոպական մի նոր հրդեհ։

Բայց մի կողմ դրած այս ամենը, եթէ Եւրոպան թիւրքերի սկսած մարդասպանութիւնը ի կատար ածելու համար վերջին մի հարուած տայ Հայաստանին և սրա հետ միասին կործանէ Թուրքիան, իւր չնական և անամօթ նիւթապաշտութեան մի ապացոյցը տուած պիտի լինի, և որ անհեռատես գերզգօնութեան մի գործ լինելով հանդերձ չէ դադարելու լինել նաև մի ափէրիստութիւն։ Եւ եթէ Եւրոպան մի Թիւրքիա պահպանելու համար փորձէ սպանանել Հայաստանը, իւր անարգութեան այնպիսի մի ապացոյցը տուած պիտի լինի, որ որքան զուրկ և հեռի խելացութիւնից այնքան էլ ամօթալի բան է լինելու։

Արդ եթէ Եւրոպան մի լաւ գոտեպնդի արևելեան այս չարչրկուած հարցին լուծումն տալու, եթէ չաջողի թափ տալ նրանից իւր այդ առթիւ անփառունակ աւանդութիւնները, պիտի ենթարկուի ոչ միայն իւր սեպհական պատուի զգացում կորցնելու վտանգին, այլ և հրաժարուած պիտի լինի իւր ամենից աւելի անվիճելի մի յատկութիւնից, որ նրա վաճառականական իմաստութիւնն է։

prof. Corrado Corradino

Թարգմ. Արշ. Ֆէթվաճեան

---

# Գ ե ղ ա ր ո ւ ե ս տ

## ՄԱՀՈՒԱՆ ԱՐՑՈՒՆՔՆԵՐ

*(Էջեր փրցուած «Մահուան Թերթերէն»)*

***

Աստղերու կրակը կ'այրէ Հոգիս և Սիրտս հեասպառ կը բաբախէ, ինչպէս ծովուն Սիրտը լուսնակի ճերմակ և ցուրտ ճառագայթներուն ներքև։

Ահա՛ բնութիւնը, որ մութի հանդարտ և նուրբ շրջազգեստին տակ կը քնանայ։ Ահա՛ մթնշաղ ստուերներ, որ շրջազգեստին թուխ ժանեակներն կը հովհարեն անդադար։

—Է՛յ, ո՜վ կայ հոն... մաշկաթև մը կը թռչի ու կը հեայ մեռելածաղիկներուն վրայ, ի՞նչ կը մրմնջայ անոնց կարմիր թերթիկներուն ականջին իվար։

Դեղնաւուն որդ մը, որ հողին փխրուն շերտերն կը ծամէ և ատամներուն ու օղակաւոր մորթին վրայ կզզայ մեռած իմաստունի բջիջներուն զօրութիւնը։

Թխամորթ շիկահաւ մը, որ կը ժպտի գերեզմաններուն լռութեանը վրայ և կը հեգնէ մահուան անզօր մրափը։

—Է՛յ, ո՜վ կայ հոն... Ծերունի Իմաստուն նստած է ծանծաղներուն ու մութին ակռաներուն վրայ և կը քնանայ մեռելածաղիկներու և մշկենիներու հանդարտ սօսափին ներքև...

Աստղերու կրակը կ'այրէ շունչս, ստինքներս գիշերուայ թարմ ցօղը կը ծծեն անյագօրէն

Ահա՛ Ոչնչութիւնը, որ իր թուխ մազերն արեգակին դէմ տալով մռայլ քօղ մը կը ծաւալէ աշխարհի վրայ...

***

Ես տերև մըն եմ, որ իմաստութեան բոցին մէջ կ'այրիմ, ես սպիտակ երազ մըն եմ, որ մոռացուած երգչի մը տրտմաշունչ լարերուն վրայ կը թրթռամ։

—Աւա՜ղ, ծերունի Իմաստուն սողոսկող որդի ակռաներուն տակ ծամուող հողի մէկ մասնիկն է, մեռելածաղկի մը մարմինին մէջ յորդող աւիշին դեղնաւուն մէկ կաթիլն է, փոքրիկ ոճիր ճանճի գորշ թևերուն թառած։

—Աւա՜ղ, ծերունի Իմաստուն աստուածութեան խորհրդաւոր գաղտնիքն է, արեգակի ցոլք մը՝ արշալոյսին մէջ նետուած, գեղեցկութեան պղպջակ մը՝ տիեզերքի մարմարեայ ծունկերուն փակչած։

Ալիքներն կուգան և աւազներուն համբոյրներով կ'արծաթեն, աստղերը կիջնան ու ջուրերու աչքերուն մէջ շափիւղայ քարերը կը սուզեն, շողոլիները ճերմակ և թաց շապիկները կը փռեն երկընքի կաթնաբոյր ծիծերուն վրայ։

—Հոգիս բու մընէ, որ կը վայէ ուղեղիս փլատակներուն վրայ։ Հոգիս կակաչ մընէ, որ կը ժպտի կանանչ զորգուած հովիտներուն մէջ։ Հոգիս սպիտակ ամպ մընէ, որ կը ծածկէ էութեանս Ոչնչութիւնը....։

***

*Այն քարանձաւը, ուր մամռածածկ ու պատռտած քարեր կան իրարու վրայ, ուր որբացած մանրուկներն ու սէզերը կողբան իրենց կողերու յաւիտենական ամլութիւնը, ուր մութի գորշ զանգուած մը կը խարխափէ կոյր մուրացկանի մը նման և տիրապետող մեռելային ամայութեանը մէջ՝ այրիացած հովերը լալկան մեղեդիներ կը դաշնակեն ամեն օր...*

*—Այդ քարանձաւը Ծերունի Իմաստունն է ահա...։*

*Մոխրագոյն ժայռ մը կայ հոն, աչքերն ի երկինք և ոտները խրած աւազին մէջ, կուրծքը պատառոտուն՝ ինչպէս ժանիքաւոր կոհակներէն պատռտուած ովկէանի մեծ սիրտը, վրան դալկահար մամուռներ կան՝ փետրահար ու մոխրածածկ բաղձանքներու նման։*

*Որբևայրի է այդ ժայռը, որովհետև ոչ երկնքի շրթունքներէն ճերմակ եղեամը կ'իջնայ հովացնելու և բեղմնաւորելու անոր չորացած կուրծքը, ոչ ազուոր մարգարտածաղիկներ կը բուսնին անոր ապառաժ կողքերուն վրայ արգասաւորութեան հրթիռները վառելու համար, ոչ աստղերը իրենց ուրախ ժպիտներն կ'ուղարկեն անոր աչքերուն և ոչ ալ լուսնի կաթ-ցոլքերն կը մատռուակեն անոր քարացած ստինքները...։*

*—Ծերունի իմաստունի Սիրտն է այդ ապառաժը...։*

* * *

*—Կայծ մը տուէք, որու վրայ խանձեմ միտքս, ինչպէս որ փարուանան իր թեւերն կը խանձէ ճրագի բոցին դիմաց։ Ժանգի-կաթիլ մը, որու մէջ տրորեմ ու լուծեմ իմ Սիրտը, իմ խեղճ, թառամած Սիրտը...։*

*Սպիտակ փոշի մը, որով բեղմնաւորեմ հոգիիս ամուլ ստինքները, որոնցմէ իմաստութեան կաթն ծորայ յորդառատ, ինչպէս թիթեռնիկի թեւերու հպումէն արգասաւորած ծաղկին ցօղունն ի վեր կենսատու աւիշն կը կայթէ զուարթօրէն,*

*Օ՜, կաթիլ մը արցունք տուէք, մանիշակային երազ մը, աստղածոր ցրտութիւն մը, հովի քաղցր քրքիջ մը, մետաքսեայ շրթանց ժպիտ մը, անբիծ գեղեցկութեան համբոյր մը և քնարբուքի մը հեշտութիւնը...։*

*Ծերունի Իմաստունին այտերն ի վար կարմիր նուռը կը լուացուի։ Ծերունի Իմաստունին շրթունքներու վրայ կեանքի բոցավառ համբոյր մը կը թրջուի։*

*Օ՜, ինչ խենթութիւն, մի՜թէ...։*

*Բայց ծերունին մեռած է ալ... անոր բջիջներուն մէջէն մահը կը սողոսկի, ինչպէս ջղջիկը կը սողոսկի խաւարի ծալքերուն մէջէն։*

*Ահա բջիջ մը, որ կ'արտասուէ դառնագին ուրիշի մը գերեզմանին վրայ, ահա բջիջ մը, որ կը քրքջայ զուարթօրէն ուրիշի մը օրօրանին վրայ։*

*Ծերունի Իմաստուն մեռա՞ծ է, Ծերունի Իմաստուն կապրի՞...։*

*—Օ՜, ինչ խենթութիւն... Ինչո՞ւ ծերունի Իմաստուն երբ կապրի գիտէ, որ մեռած է. ինչո՞ւ ան երբ մեռած է, գիտէ որ կ'ապրի։*

*Բջիջներն իրարու մահն ու իրարու կեանք կը գիտեն և Ծերունին չը գիտէ այդ. մինչ նա կը կարծէ թէ այս բոպէիս կապրի, մինչդեռ թէ մեռած է, թէ կապրի, մինչ նա կը կարծէ թէ այս բոպէիս մեռած է, մինչդեռ թէ մեռած է, թէ կ'ապրի...։*

*Օ՜ ինչ խենթութիւն, ինչ խենթութիւն...։*

*Ծերուն Թորգոմեան*

# Գրականութիւն

## ՁԻՆԱԿԻՑՆԵՐ

*Մշեցի Սողօն նամակ ստացաւ Կովկասում ապրող հօրեղբօր որդուց հետևեալ բովանդակութեամբ.*

*«Տղադ պզտիկ Դանիէլն ողջ է և առողջ, հոս քովս եկած է, ազատուած է թուրքերու ձեռքէն, մէկալներու համար խաբար մը չունիմ, շատ բան կըսեն, բայց որու հաւատանք, սպասենք Աստուած մէյ-մէկ կ'երեցունէ բոլորին, պզտիկ Դանէլն՝ քու տղադ հոս է, կընաս վստահ ըլլալ»։*

*Սողօն ցնծաց։ Դեռ պատերազմից առաջ, նա թողել էր հայրենի գիւղը՝ Ռուսաստան գնացել աշխատանքի. և հիմա երկրորդ տարին էր՝ որ գործում էր կամաւորական խմբի մէջ։ Համոզուած էր իսպառ, որ իրա ողջ ընտանիքը բնաջնջուել էր երկրում, ինչպէս որ հազարաւոր ուրիշ ընտանիքներ՝ կոտորածի ժամանակ. կինն էր, մայրը, այրի քոյրը, հօրեղբօր երկու տղաներն ու մէկ աղջիկը իրա երեք զաւակները։*

*—«Իշտա՛»—ասում էր նա սմքած դառնութեամբ ու խեղդուած կսկիծով—«ութ-ինն ջանէն հէչ մէ մարդ չը խալսեց, զմէն մորթած են... զմէն»։ Ասում էր և յամառ ու անթերի կռւում տաճիկների ու քիւրդերի դէմ։ Այլևս ուրիշ նպատակ ու գործ չկար նրա համար. շարունակ հէնց «զարկել» էր ուզում թշնամուն. նեարդային ու անկարգապահ էր դառնում ամեն անգամ, երբ խումբը օրերով կռիւ չէր ունենում, հանգստանում էր։ Դադարների միջոցին Սողօն կորցնում էր իւր անհատական հանգիստը, այս պատճառով նաև, որ ընտանիքն էր մտաբերում, մտածում ու մտատանջւում...*

*Եւ ահա յանկարծ՝ հօրեղբօր տղայի նամակը։ Թէև գիր չէր իմանում, բայց կարողացաւ կարդալ ու հասկանալ, ուրիշներին էլ կարդալ տուեց մի տասն անգամ։ Սկզբում նա տարակուսեց, կասկածներ ունեցաւ, հաւատը չէր գալիս, բայց վերջը բոլորովին հաւատաց և բուռն ուրախացաւ...—«Տօ, տղայ Պօղոս»—գոհացած երջանիկ երեսով մօտեցաւ Սողօն իւր տասնապետին, որ նոյնպէս մշեցի էր և արդէն գիտէր նամակի մասին. «հրա՛շ է... Գոհութիւն Աստուծոյ!»*

*Նայեց արևին, ժպտաց, յետոյ հայեացքը ձգեց Պօղոսի փափախին և նորից ժպտաց։*

—

*Միեւնոյն օրը, մշեցի Հայրապետը մի լուր առաւ։ Հայրապետն էլ կամաւոր էր, նոյնպէս երկրից հեռացած և իւրայիններին վիճակին անգիտակ։ Փափուկ-սիրտ երիտասարդ էր, հիւանդոտ երեսով, թուլակազմ, և շատ էր դարդ անում՝ կոտորածների մասին, լսելու օրից ժամերով լուռ էր մնում՝ անմտած ու անգործ...*

*—«Քեռ հօր ջանդակ»—տեղեկացրին նրան—«գեղի ճոչ աղբրի գլուխ թալուկ էր։ Տեսայ, գոտուց ճանչցայ, սօլից ճանչցայ, սև մազերուց ճանչցայ։ Մկայ էլ դեռ հոն թալուկ է, թաղող չի կայ»։*

*Լուր բերողը Հայրապետենց գիւղից Գասպարի տղայ Սեդրակն էր, որ կոտորածից ճողոպրել՝ եկել էր խմբին հասել։*

*Հայրապետը լսեց խաբարը, բան չասաց՝ ոչ էլ մտածեց, այլ միայն տնկեց հայեացքը գետնին. և ապա, բաւական անց, տարակուսած կարծես ստուգելու նպատակով, հարցրեց Սեդրակին.*

*—«Թալա՞ւկ է, կըսես...»*

*—«Աղբրի գլուխ... ցամքեր, խոմեր է» — պատասխանեց Սեդրակը և անտարբեր սկսեց ծխախոտ գլանել իրա համար։*

*Հայրապետը այլևս հարց չտուեց։ Իրա վրանը քաշուեց ու պառկեց խոտի վրայ։*

—

*Նամակը Սողօյին և լուրը Հայրապետին հասնելուց յետոյ դեռ կէսօր չեղած՝ խումբն շտապ պատրաստուեց ու շարժուեց*

դէպի Թշնամին, որ փորձ էր անել յարձակում գործելու։ Հայրապետն ու Սողօն միևնոյն ջոկատի մէջ էին. և երբ ջոկատը հասաւ առաջաւոր դիրքերին ու շղթայով ձգուեց խրամատի երկարութեամբ,—նրանք երկուսը քով-քովի եկան։

—«Հրացանները պատրա՛ստ»—հրամայեց ջոկատապետը՝ շըղթայի մի ծայրից միւսը քայլելով։ Չըրխկչըրխկոց եկաւ խրամատի մէջ՝ փութկոտ, յախուռն՝ և շուտով դադարեց։ Տղաները, պատրաստ, ականջներն սրեցին յաջորդ հրամանին ի սպաս։ Հրամանը, սակայն, ուշացաւ, ջոկատապետը հանգիստ նստել էր քարի վրայ՝ հեռադիտակը Թշնամու դիրքերին ուղղած։ Այս լռութիւնից օգտուելով՝ Սողօն դարձաւ Հայրապետին.

«Տօ, Հայրօ, տղաս ազատեր է, Թուղթ առի... Օղորթ կըսեմ՝ ազատիր է»։ և պատմեց նամակի բովանդակութիւնը՝ աչքը չարունակ հրացանի բերանին, որպէսզի նշանի առնուած գիծը չխախտուի։ Նա պինդ ու խորամուխ հպել էր հրացանի կոթը ուսին, մատներով էլ աներեր օղակել էր փողն ու մէջքը...

Զուարթ էր սիրտը, հայեացքը՝ հեռաթափանց ու յամառ, կըռուելու կամքը՝ ուժեղ, անսպառ։

Հայրապետի ստացած տեղեկութեան մասին Սողօն չէր իմացել, և մինչդեռ սա իւր պատմութիւնն էր անում շաղակըրատ ուրախութեամբ՝ Հայրապետը չէր լսում նրան։ Չէր էլ նայում՝ ոչ դէպի Թշնամին, ոչ իրա հրացանին։ Միտքը գիւղումն էր՝ աղբիւրի գլխին։ Հայրն էր պատկերանում՝ կենդանի ժամանակ, յետոյ դիակն էր երևում. յետոյ հօր ձայնն էր լսում։ Յետոյ դարձեալ դիակը... և այդպէս իրար շղթայուած, գնում էին գալիս Հայրապետի երևակայութեան մէջ դիակն ու կենդանի մարդը։

...Աղբիւրը բղխում էր երկու քարի արանքից՝ բարակ ոլորուն Թելերով։ Ջուրը կուլթ-կուլթ փռւում էր աւազին ու շողշողում արևի լոյսից։ Խոտ կայ աղբիւրի շուրջը՝ վճիտ-կանաչ գոյնի. երկու Թութ էլ կայ՝ ցածրիկ ու ցանցառ և նրանցից՝ պստիկ, նոսր ստուեր է ընկել դիակի վրայ ...

—«Նշանը բռնէք»—հնչեց ջոկատապետի ձայնը — «պըիցէլ արէք հազար հինգ հարիւր քայլ, ուղիղ բըրի գագաթին խփէք... Պատաստ—րա՜ստ... Կրակ!

Տղաները մի համազարկ տուին կարճ ու կտրուկ։ Հայրապետը սթափուեց, հապճեպ կրակեց հրացանը՝ ամէնքից յետոյ ուշացած, մենաւոր գնդակը աննպատակ սլացաւ—գնաց անորոշ ուղղութեամբ և իրար ետևից ուրիշ երեք գնդակ եւս որոտով դուրս թռան Հայրապետի ձեռքից ու շաղ անցան դէս ու դէն։

—«Հայրօ՛,»—բարկացաւ ջոկատապետը—«ուշքդ ժողովիր, յիմար անսասուն, խա՞ղ ես խաղում»։

Տղաների շարքով էլ դժգոհութիւն ու զարմանք տարածուեցին։ Հայրապետը վախեցաւ ու լեզուն սղմեց ատամներով, որպէս գի [illegible]չքն վրան գայ։

—«Տօ տղայ»—զուարթ զարմանքով դարձաւ նրան Սողօն, երբ չորրորդ համազարկից յետոյ հրաման եղաւ ընդհատել կրակը—«մըղի հետ մէկտեղ զարկ. ի՞նչ էղեր է քըզի։»

—«Բան չ'էղեր»—կոշտ պատասխանեց Հայրապետը և սըրտնեղած ինքն իրան դէմ՝ հրացանի զատվորը պինդ յետ քաշեց, փամփուշտի դատարկ մըխացող գիլզը նետեց դուրս, նոր փամփուշտներ դրաւ ու զատվորը շըխկոցով տեղը ձգեց։

Յուզմունք եկաւ վրան. երեսը վառւում էր ամօթից, բարկութիւնից, և յուսահատութիւնից միաժամանակ։ Մատները դողացին հրացանի վրայ։

—

Կռուից յետոյ, երբ խումբը բանակեց Թշնամու լքած բլուրների շրջանում, Սողօն ու Հայրապետը տեղաւորուեցին, ջոկատի տղաների հետ, աղբիւրի կշտին, որը յախուռն առատութեամբ դուրս էր Թափւում մամռապատ ժայռերի տակից։

Բոլորն էլ շտապեցին Թէյ պատրաստել ու իրանց հացն ուտել—վերջացնել, որովհետև կարգադրուել էր՝ ոչ կրակ անել, ոչ էլ ճրագ վառել մութն ընկնելուց յետոյ, որպէսզի Թշնամին անգիտութեան մէջ մնայ, Թէ որտեղ է խումբը։

Մութն էլ խիտ եղաւ. ամպեր եկան ու ծածկեցին երկինքը՝ աստղերը կորան։ Բայց օդը մնաց բոլորովին խաղաղ և այնքան դուրեկան, որ տղաները հաճոյքով պառկոտեցին քարոտ գետնի վրայ ու սկսեցին զրոյց ու կատակներ անել՝ խաւարի մէջ, իրար համարեա չտեսնելով։ Այս վիճակն ինքնին նիւթ էր տալիս անվերջ սրախօսութիւնների և երկար ժամանակ աղմկոտ ծիծաղ էր լսւում աղբիւրը շուրջը։

Գիշերուայ մի վախտ, երբ բոլորն էլ քնած էին, Հայրապետը բըդեց Սողօյի կողքը.

—«Ել ել... չեմ կա՛րնայ քնի... Ել կըսեմ»։

Սողօն զարթնեց և հրացանը վայրկենապէս ձեռքն առնելով արագ ծունկի եկաւ մթութեան մէջ։

—«Ես եմ, իշտա...»—կոշտ-կոշտ շշնջաց Հայրապետը. «Չեմ կարնայ... վրաս դէշութիւն կուգայ...—Հայրօն իմ, իշտա բուլուլցի Հայրօն իմ...

—Տօ տղայ, Հայրօ, դո՛ւն ես... ի՞նչ է պատահեր, Հայրօ...»

—Բան չէղեր, ես իմ... սիրտս կէրի... Կըսեմ, մէկտեղ էրթանք՝ իմ հօր ջանդակ Թաղենք»։

Սողօն, դեռ չսթափուած բոլորովին, զարմացած բացականչեց.

—«Ջանդա՜կ... տօ տղայ, ի՞նչ ջանդակ։»

—«Իմ հօր ջանդակ, իշտա-չըս գիտա՞յ, Կըսեմ, էրթանք խոբենք՝ աղբրի գլուխ Թալուկ է։»

Սողօն բան չէր հասկանում. «Ո՞ր մէկ աղբուր կըսես, այ օղուլ»։

—«Մեր գեղ, իշտա... աղբրի գլուխ... ցամքեր խոմեր է...»

—«Հա՜ վալլա-վալլա»—Թերահաւատ ու սրտնեղած ընդմիջեց նրան Սողօն. «յո՞ւստեն գինաս, երա՞զ տեսար մկայ... Քնիր, քընիր, այ օղուլ։»

Սողօն մտքում սկսեց հայհոյել Հայրապետին. բայց երբ վերջն իմացաւ Հայրապետից, Թէ բանն ինչումն է՝ լռեց ու վըշտացաւ մի պահ։ Հրացանը վայր դրեց և խաւարի մէջ սկսեց կուրծքը քորել քնէած ու մտազբաղ... իրա պստիկ Դանէլին յիշեց ու ժպտաց՝ վայրկենապէս մոռանալով Հայրապետի հօր դիակի մասին։

Հայրապետը սպասում էր։ Չէր տեսնում Սողօյի երեսը. միայն հազիւ նշմարում էր նրա մարմնի անհաստատ, դժուար որոշելի ուրուագիծը և լսում էր նրա շնչառութիւնը։

Աղբիւրի աղմուկը դարձել էր բարձր ու զրնգուն։ Տղաների միջից էլ խառը խռմփոց էր ելնում։

—«Կուգա՞ս էրթանք»—զուր սպասելուց ետք հարցրեց Հայրապետը՝ թթուած անախորժ ձայնով։

—«Աղէկ... հէքուց հրամանատարէն իրաւունք կառնենք...

—«Մկա՛յ էրթանք, հէքուց ուշ կէղնի։»

—«Տօ տղայ, մութն ի, ո՞ւր կէրթաս, ճամբան չի կայ, Թուրք լէ մըր կողք նստուկ ի... հէքո՛ւց կերթանք։»

—«Մկա՛յ էրթանք»—պնդեց Հայրապետը խնդրախառն պահանջկոտութեամբ։

Սողօն վրդովուեց նրա այդ յամառութիւնից։ «Հէքուց»—ասան ձգելով երթալը, նա ուզում էր ազատուել անհանգստութիւնից, որ Հայրապետի անժամանակ ներկայութիւնն էր պատճառում նրան։ Տարօրինակ էր համարում ընկերոջ յուզմունքը։ Բայց և անկեղծ ցաւակցում էր վայրկեան-վայրկեան. և ցաւակցական ու միևնոյն ատեն խրատական ձայնով սկսեց համոզել Հայրապետին.

—«Տօ տղայ, քեօ հէր սպաննուեր—պրծեր է, իշտա. մկայ ի՞նչ պէտք է անես։ Զիմ հէր լէ, զիմ մէր լէ քրդեր սպանած են՝ ջանդկներ յո՞ւստէն գտնեմ, ես գիտա՞մ ո՞ւր Թալուկ են անոնք... Մկայ, իշտա կկռուեմ Թուրքի դիմաց։ Պէտքէ շատ Թուրք զարկեմ, շատ քուրդ զարկեմ... Չգէ, այ օղուլ, դուն կա-

մաւոր ես, քըզի չը սազէր ջանդկնու համար մտածել։ Ջանդակ է, իշտա, կընմա սաղցուս»։

Հայրապետը սուս արեց։ Իսկ Սողօն էլի խօսեց և ապա հարցրեց.

—Ի՞նչ կըսես մկայ, խօսէ նայեմ»։

—Ի՞նչ ըսեմ...»—թևաթափ, կոտրուած կմկմաց Հայրապետը.» իշտա հէքուան... ի՞նչ ըսելու եմ»։

Սողօն ուրախացաւ ու գոհացաւ «Հէքուց, հէքուց...—ընկերական անփութութեամբ ու շտապելով եզրափակեց նա իրանց խօսակցութիւնը, բարի գիշեր ասեց, գլուխը դրեց ցած, հրացան գիրկն առաւ, ու իսկոյն քնեց։

Հայրապետը արթուն մնաց մինչև լուսաբաց՝ աչքերը շարունակ խաւարի, միտքն էլ անորոշութեան մէջ։ Տառապանքն ու անտարբերութիւնը հերթով գալիս՝ պտոյտ-պտոյտ անցնում էին նրա լռութեան միջով։

—

Լուսացաւ թէ չէ՝ կռիւ սկսուեց։ Գիշերուայ ընթացքում նախապատրաստուած, թշնամին մէկ անգամից բաց արեց հրացանային ուժեղ կրակ։

Գիշերապահներից կանխապէս իմաց արուած, տղաները արագ հաւաքուեցին և կազմ ու պատրաստ կեցան դիրքերի մէջ։ Սողօն ու Հայրապետը միասին էին։ Նրանց ջոկատն ու ամբողջ վաշտը թողնուեցին յետ, իսկ միւսները առաջ անցան և կռիւը ծաւալուեց։

«—Բաֆըր»—զուարթ-զուարթ արմունկը զարկեց Սողօն Հայրապետի կընակին—«ջա՞նդկի համար կիլաս։ Իշտա, կընմա օր հարիր թուրքի ջանդակ փռէ գետին։ Զարկենք էդ գաղաններուն, մըր վրէժ հանենք՝ մըր հօր, մըր մօր, կնգայ սիրտը հովցունենք արքաութէնի մէջ։ Անոնց հոգին մըզի կիշկայ, Մշոյ սուրբ Կարապետ մըզի կիշկայ, սուրբ Աստուածածին մըզի կիշկայ... Զարկենք լաօ, զարկենք»։

Հայրապետը ժպտաց վերջապէս և աշխուժով ասաց, «լաւ կէղնի, Աստուած գինայ»։

—«Հալբա՞թ լաւ կէղնի, ղուրբա՞ն էսօր»—ուրախ յուզմունքով համարեա պոռաց Սողօն և ականծալից գորովանքով համբուրեց հրացանը մի քանի անգամ. «ղուրբա՞ն էսօր»։

Հայրապետը հաւանեց Սողօյի արածը և ինքն էլ շրթունքներն անխօս հպեց իրա հրացանի կոթին։

Կռիւը սաստկանում էր. հրացանների անընդհատ գրոռոցներին միացաւ թնդանօթների որոտ՝ սկզբում սակաւ, ապա յաճախ շարունակ։ Թշնամու կողմից մի ռումբ վշշալով ու ֆռռալով եկաւ ընկաւ տղաներից մի հարիւր քայլ յետև, բայց չպայթեց՝ ընկաւ ու տեղնուտեղն անշնչացաւ կարծես։ Տղաները հռհռացին։

—«Տօ տղա՛յ.»—քրքջուն դուրս թռաւ Սողօյի բերանից։

—«Թուրք մըզի հետ թօփ (գնդակ) կխաղայ»—բարձրաձայն կատակեց Հայրապետը ու գըլ-գըլ ծիծաղելով՝ զարկեց ծնկներին։

Երկրորդ ռումբն ընկաւ միևոյն շրջանում և դարձեալ չպայթեց։ Երրորդը եկաւ՝ աղմուկով տրաքեց ու հող ու քար ցրիւ տուեց չորս կողմը։ Չորրորդը, հինգերրորդը՝ իրար ետևից պայթեցին, բայց տղաների ուրախ տրամադրութիւնը չաւրուեց, մանաւանդ որ ո՛չ ոք չէր վնասւում ռումբերից։

Վտանգի ու անհոգութեան այդ պահուն, յանկարծ կարգադրութիւն եղաւ շտապ և կտրուկ՝ «Ուէզէր վը առա՞ջ, դէպի ձախ»։ Ջոկատը արագ մարշով շարժուեց և տեղ հասնելուն պէս՝ սուզուեց կռուի բորբոքուն ժխորի մէջ։

Վճռական շրջանն էր պայքարի։ Երկու կողմն էլ լարել-հաւաքել էին իրանց գլխաւոր ուժերը, օրհասական մարտի բռնուել... Մինչ թշնամին սկսել էր թուլանալ։

—«Հայրօ»—ձայն տուեց Սողօն կռուի մտնելու վարկեաններին—«զա՛րկ մկայ, ղուրբան, զարկ»...

Երկուսն էլ առաջ ընկան, կողքրին իրար և մի քառորդ ժամ չանցած՝ երկուսն էլ սպանուեցին։

—

Դիակները բերին։

Սողօն զարկուել էր ուսից, կրծքից ու փորից՝ մահացել էր անմիջապէս։ Հայրապետի էլ ճակատին էր առել գնդակը։

Տղաները լայն փոս փորեցին՝ բոլոր սպանուածների համար։ Փոսի մէջն ևս Սողօն ու Հայրապետը կրկին քով քովի եկան՝ ջոկատի մշեցիների ցանկութեամբ։

...Թշնամին յետ էր նահանջած՝ դէպի նախկին դիրքերը. Թնդանօթներն ու հրացանները լռեցին և երեկոյեան դէմ՝ օդը սկսեց դարձեալ խաղաղուել ու անուշանալ, ինչպէս նախորդ գիշերը։

Մինչ երկինքը մնացել էր մռայլ ու ամպամած...։

Վ. Վալադեան

---

## (ՖԵԼԻԷՏՈՆ)

## ԽԱՂԷԻՆ ՄՈՒԽԱՆ

Երբ ան իր սովորական այցելութեան ժամանակ մահճակալիս մօտ նստած կը լռէ, շատ անգամ մտքէս անցած է.—Արդեօք եթէ օրմը քակեմ այս մարդուն կազմուածքը, պիտի յաջողեմ կրկին վերաշինել զայն։ Ու միշտ ալ անկարելի գտած եմ այս, ինչու որ բնութիւնը անոր կազմուածքին ատաղձը մինիմումի հասցուցած է։ Իրաւ է, անցելոյն մէջ Քրիստոսը Երուսաղէմին տաճարը խոստացեր է քակել և երեք օրէն շինել, և ներկայիս մէջ դերձակ մը կրնայ տափատ մը քակել ու վերաշինել, սակայն պարզ է, որ նորակառոյց տափատը կամ տաճարը միշտ բան մը փոքր կուգայ իր նախապատկերէն։ Թէև, հարկաւ դարձեալ կրնայ իր մկրտութեան անունն՝ «տափատ»-ը պահպանել։ Միայն, գուցէ «փոքր տափատ» մականունով ինչպէս աշխարհագրութեան մէջ «փոքր Հայք» «փոքր Ասիա» և այլն։

Բայց դուն եկուր սա նայէ, որ խաղէինս իր երկրորդ մանկութենէն վերջ կրնայ նոյն իսկ իր մարդ կոչումէն զրկուիլ, վասըն զի տեսնելով այդքան պզտիկ մարմին մը, ոչ մի կենդանաբան պիտի զիջէ զայն «մարդ» կոչել, իր սեռին այլասերումն ի նկատի առնելով։ Բայց հարկ է մեզ սուբեկտիւ զատողութիւններ մէկդի թողուլ և օբեկտիւ ուսումնասիրութեամբ միայն առաջ ընթանալ։

Աղէկ չեմ յիշեր աշխարհագրագէտները երկիրը ուսումնասիրելու ժամանակ հիւսիսային թէ հարաւային բեւեռէն կըսկսին։ Ըստ իս, որ բեւեռէն ալ սկսելու ըլլան, ճիշտ բեւեռային կէտի մասին լռութեամբ պիտի անցնեն, իբրև գիտնականաց համար անհասանելի տարածութիւն մը։ Ես ալ նմանապէս եթէ սկսելու ըլլամ նկարագրել խաղէինս, անոր հիւսիսային բեւեռէն՝ այսինքն մարդակազմօրէն ըսած, գլուխէն պիտի սկսիմ, բայց գագաթէն սկսեալ բաւական տեղ լռութեամբ պիտի անցնեմ, մինչև հասնիմ անոր ճակատին կէսերը, ուր հասարակային գիծերու նման կը խտանան արևելքէն արևմուտք երկարող կնճիռներ. անկէ դէպի հիւսիս մշտական գլխարկի սահմանները ըլլալով, ցարդ ուրիշներու աչքերն չեն կրցած բարձրանալ անոր գլուխն ի վեր։ Իրաւ, տարիներ շարունակ այցելելով խաղէինիս տանը, ոչ մէկ անգամ տեսած եմ զանի գլխաբաց, անանկ որ տրամաբանական հիմունքով միշտ կարծած եմ, որ անոր գլխարկը անոր մարմնին մէկ զգայարանքը կը կազմէ և անբաժան է գլուխէն։ Չի կարելի երևակայել զայն առանց գլխարկի, ճիշտ այնպէս, ինչպէս տուն մը առանց առաստաղի։ Ու... եթէ օր մը տունէն ներս մտած պահուս ան դէմս ելլէ առանց գլխարկի, պիտի ներողութիւն խնդրեմ, որ օտար

տուն մըն իմ մտեր և հարցնեմ միաժամանակ, «Ներողութիւն, որտեղ կը գտնուի խաղէին Մուխանի տունը»,

Խաղէին Մուխան Միխաիլեանցը բաղկացած է գլուխէ, իրանէ և զոյգմը վերջաւորութիւններէ, որոնցմէ իրանն ու վերջաւորութիւնները մինչև կրունկը հասնող արխալուղին հովանոյն տակ կազմած են մէկ դաշնակցական հատուած և գլուխին հետ յարաբերութիւն կը պահպանեն Մուխանի պարանոցին միջոցաւ։ Մարմնոյն կազմը չոր է, շատ չոր, անանկ որ եթէ խաղէին Մուխանը ապրած ըլլար մարդակերութեան շրջանին, իբրև պասուց նիւթ, պիտի ուտուէր նոյն իսկ Մեծն պահոց սրբազան օրերին, առանց ամենաչնչին մեղք մը աւելցնելու մեղաց տոպրակին մէջ։ Եթէ ըստ մասանց բանի քննելու ըլլանք Մուխանին, պիտի մարդաբանական դերանուն կոչենք զայն, իբրև մարդու տեղ դրուող էակ մը և հոլովենք իր համապատասխան դերանուանց կարգին։ Անոր դէմքին վրայ կաշին ու ոսկորը կը միանան իրարու առանց շաղկապի մը, կամ ինչպէս հասարակօրէն կըսուի, առանց մկանի։ Տիրող երևոյթը Մուխանի դէմքին վրայ անոր ոսկրացած քիթն է, որը երկարելով որոշուած սահմանէն վար, խիստ հսկողութեան տակ է առեր բերանը, ատոր պատճառով է անշուշտ, որ բերանը այնքան սակաւախօս ու զգուշաւոր է դարձեր։ Օրական միայն երեք անգամ կը բացուի բերանը, պատշաճաւոր իշխանութեանը թոյլտուութեամբ, ըսելու համար իր աղախնին, «Ջապէլ, հաց շինիր» կամ «Ջապէլ, հաց չես շինի», բերանին մէջ լինդերը պարպուած փամփուշտակալներու կը նմանին, անանկ որ ծամելու ատեն թուշը ներկայացնող կաշին տեղատուութեան և մակընթացութեան մէջ կինայ, ու մերթ ալ անանկ թափով մը կուլ կերթան թուշերը, որ պահմը նորէն ետ գալու յոյսդ իսպառ կը կտրի սիրտէդ։ Խաղէին Մուխանի աչքերը դէմքին վերաբերմամբ չեզոք դիրք մը բռնած են։ Եւ երբ Աստուած ստեղծագործութեան ժամանակ հրամայած է ջուրերուն փոս տեղերը անցնել, կերևի այս հրամանը իրենց մասին կարծելով է, որ բիբերը գլորուել բուն են դրել Մուխանին խոռոչներուն մէջ ու «աչք» կոչուել։ Միակ նկատելի հարթութիւնը Մուխանին երեսին վրայ անոր արևակէզ ճակատն է, որու տարածութիւնն ի նկատի ունենալով, ամենայն իրաւամբ զայն Մուխանի անապատ կը կոչեմ (Ջըշփոթել, կաղաչեմ, Մուղանի անապատին հետ)։ Ժպիտը անսովոր բան է խաղէինին դէմքին վրայ, վասնզի այնպիսի գործողութիւն մը որպիսին է ժպիտը, կը պահանջէ դէմքին վրայի բոլոր զգայարանաց միահամուռ գործակցութիւնը, որը կը բացակայէ։—Բայց բոլորովին չէ չի կարելի ըսել, կը պատահի, որ ան տարուայ մէջ մէկ անգամ կը ժպտի... ու ժպիտին պատճառը, գէթ սա վերջին տարիներս, միշտ ալ դրացիին հաւն է եղեր, որ վեհանձնաբար Մուխանին հաւնոցին մէջ ածեր է։ Կը յիշեմ առաջին ժպիտը, այդ հազար ութը հարիւր... չեմ գիտեր քանիին էր, վերջապէս ռուս թրքական պատերազմէն ետքը պատահեցաւ։ Բայց գիտնալու էք, որ ուշ եկող ժպիտը ուշ ալ կանհետի։ Եւ իրաւ, գիտուած է ժպիտներ Մուխանի երեսին վրայ, որ ամբողջ օր մը մնացած են։ Տարուած ըլլալով իր միտքերով խաղէին կը մոռնայ յաճախ առաւօտեան սկիզբն առած ժպիտը վար առնել երեկոյին, Ու կը մնայ ժպիտը Մուխանի երեսին վրայ այնպէս, ինչպէս օր մը առաջ ներկայացուած թատրոնի մը աֆիշը փողոցի որմին վրայ։ Խաղէին Մուխանին ժպիտը ինքնըստինքեան շատ բարդ կազմութիւն չունի։ Զոյգ մը կնճիռէ չակերտներ կը փակեն Մուխանի աչքերը, րոպէապէս վեց զոյգ կնճիռներ վարէն օգնութեան կը փութան դէպի վեր անծանօթ ուղղութեամբ մը։ Ընչացքը, յանկարծակիի եկած, իր ինչ ընելիքը չիմանալով, մեղմիկ կերերայ վերին շրթունքին վրայ. իսկ քիթը կը տարակուսի իր համաձայնութիւնը յայտնելու կատարուած իրողութեանը մասին։ Կատաբեալ ֆուտուրիստ մը ըլլալու է մէկը, որ կարողանայ երևակայել թէ սա մարդը ժամանակ մը երեխայ է եղեր, ունեցեր է կլոր թուշեր ու փոքրիկ քիթ, պտտեր է գլխաբաց ու մանաւանդ կծեր է մայրիկին մատը, կծեր...

Ահա այն բոլորը, ինչ որ կարելի էր ըսել խաղէին Մուխանի ժպիտի մասին։

Հիմա դառնանք անոր կարային։ Կարան այն է Մուխանին համար, ինչ որ կեղևը ծառին։ Կեղևին պէս պինդ գրկած է իր բունը. անոր պէս թանձր և անանկ սեղմ կաղապարուած անոր մարմնին վրայ, որ եթէ զայն լեցնելու ըլլանք ոևէ կաւանիւթով, կամ բրոնզէ հալուածքով, դուրս կուգայ ոչ այլ ոք, եթէ ոչ՝ խաղէին Մուխան։ Երբ գիշերները Մուխանը կը փոխադրուի կապայէն յանկողին ու պատէն կը կախէ կարան, մատներովդ պիտի փորձես անպատճառ, համոզուելու համար, որ բնակութիւն չկայ հոն։ Ու կը կարծես թէ կարային բովանդակութիւնը քանի մը րոպէով միայն դուրս ելաւ նորէն վերադառնալու համար։ Ճիշտ այնպէս, ինչպէս կրիան մի քանի րոպէով փորձէ դուրս գալ իր ամանէն։ Մուխանին կարան փոխանակ հիննալու, մաշուելու, ընդհակառակն կը զարգանայ ու կը նորնայ, վասնզի կերակուրի ժամանակ ոչ պակաս սնունդ կառնէ, քան ինքը խաղէինը։ Կարելի է առանց հմուտ քիմիագէտ մ՛ ըլլալու ամբողջ տարուան մը ճաշացուցակը հանել Մուխանին կարային առաջամասը ենթարկելով թեթև քիմիական վերլուծութեան։ Անանկ որ անկարելի է դարձեր խաղէին Մուխանի համար ընդարձակ պատառ մը բերան տանել, առանց անոր համառօտագրութիւնը կարայի սրտին վրայ դրոշմելու։

Չեմ յուսար որ այսքան տեղագրական ծանօթութիւնք բաւական համարուի փողոցին մէջ քալած ատեն զայն ճանչնալու համար։ Ապա ուրեմն պիտի ըսեմ ձեզ և այս։—Անծանօթ օտարական, եթէ քեզի պատահի Երևան մտնել և մայթին վրայ հանդիպի քեզի մարդ մը, որուն հաւասարակշռութիւնը կը պահպանեն իր երկու կողմը գտնուած գրպանները իրենց հաւասարաչափ բովանդակութեամբ, ու եթէ մէկ գրպանէն քանի մը մսխալ ծանրութիւն հանելու պարագային անոր գետին գլորուելու վախը զգաս՝ գիտցիր որ ան է քո փնտրածը։ Ու մի վարանիր մօտենալ ու ըսել կարօտակէզ. «բարև, խաղէին Մուխան, քէֆ, հա՜լ!...։

Լեռ Կամսար

Երևան

## ՊՈՍՏ-ԱՐԿՂ

Երևան.—Հ. Արտուրին,—Աւելի յաջողին կսպասենք։

—

Դիլիջան.—Շահրազին.—Չի հրատարակուիր։

—

Մեր նորածիլ բանաստեղծներին.—Աշխատեցէք աւելի միտք դնել ձեր գրուածքներում, քան թէ թուղթի վրայ գրչի աւելորդ խաղեր անել։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

Կ. Հ. Բ. Ընկ. և Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանցի անունով՝ Ամերիկա գաղթած մշեցի Խոսրով Կոնչոյեան 200 ռ. է ուղարկել, մշեցի Ալեքսան Մովսէսեանին յանձնելու համար։ Ալեքսան Մովսէսեանի հասցէն իմացողները թող բարեհաճեն յայտնել Հ. Բ. ընկերութեան գրասենեակում։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԱՐՀԵՍՏԱՆՈՑՈՒՄ

*Գանովսկայա փող. № 3. ծախւում են երեխաների շորեր մատչելի գներով, սրբիչներ, ծրարներ, փոստի թուղթ և այլն։ Ընդունւում են պատուէրներ աթոռների վերանորոգութեան։*

---

*Կ. Հ. Բ. Ընկ. նպաստաւոր դպրոցների համար հարկաւոր են ուսուցիչ-ուսուցչուհիներ։ Ցանկացողները պէտք է շուտով դիմեն Ընկ. գրասենեակ՝ Աբաստաբադեան հրապ. № 7, ուր կարող են տեղեկանալ տեղի և պայմանների մասին։*

4—4

---

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*Հրատարակութեամբ լոյս տեսաւ և վաճառւում է*

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՓԱՐԵՄՈՒՋԵԱՆԻ**

## „ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ"

*ԳՐՔՈՅԿԸ*

ԳԻՆԸ 10 ԿՈՊ.

*Դիմել Կ. Հ. Բ. Ը թեան գրադարանին՝* Абасъ-Абадская 7. *կամ թէ «Գիր» գրախանութին,* Вельяминовская улица.

3—2

---

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հարկաւոր են Ուսուցիչներ և Ուսուցչուհիներ. ցանկացողները պէտք է դիմեն Հ. Կ. Կոմիտէին,* Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3—2

---

## ԴԻԼԻՋԱՆԻ ԱՐՀԵՍՏԱՆՈՑԻ ՀԱՄԱՐ

*Հարկաւոր է մի փորձուած և հմուտ ձեռագործի վարժուհի։ Ցանկացողները թող դիմեն իշխանուհի Մ. Թումանեանցին.* Барятинская, № 6.

---

## ԴԻԼԻՋԱՆԻ ՈՐԲԱՆՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հարկաւոր են երկու կառավարիչ, չորս օգնական-Աւագ-ուսուցիչ և ուսուցչուհիներ (մէկը կամ երկուսը ռուսագէտ)*

*Պայմանների մասին դիմել Կ. Հ. Բ. Ընկ. Գրասենեակ.* Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3 – 2

---

# ՄԻ ԲԱԺԱԿ ԹԷՅ

## „Чашка чаю“

*Տիկին Շուշանիկ Օզանէզեանը խնդրում է «Մի բաժակ թէյ»-ի հերթապահ յարգելի տիկիններին և օրիորդներին մասնակցելու խորհրդակցութեան, որ տեղի է ունենալու «Մի բաժակ թէյ»-ի շինութեան մէջ ամսիս 13-ին, երեքշաբթի առաւօտեան ճիշտ ժամի 12-ին։*

---

*Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած*

## *կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի*

*արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և դիւանական գրքեր։*

*Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։*

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.